

Նկ. ԶԱՆԻԿ ԳԱՍՊԱՐՅԱՆԻ

# ԱՅՑ ՀԵՐՈՍՆԵՐԻ ՇԻՐԻՄՆԵՐԻՆ

ՄԻՔԱՅԵԼ ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ

*Կրասնոդոնի երիտասարդ գվարդիականների*
*եղերական մահվան 30-րդ տարելիցի առթիվ*

Եկել ենք ահա ձեր շիրմին այցի,
Բերել Հայաստան երկրից ծաղիկներ,
Բերել կսկիծը հայոց մայրերի,
Նաև սրտագին երախտիքը մեր:
Կրասնոդոնցինե՛ր,
Դուք երիտասարդ գվարդիականնե՛ր,
Հայրենի հողն ենք սիրում ձեզ նման
Եվ ոսոխներին՝ ձեզ նման ատում:
Հնչում է ցայսօր երգը ձեր հատո՛ւ,
Որ դուք երգեցիք ածխահորի մոտ,
Ուր ձեզ նետեցին
Դաժան թշնամու թաթերն արյունոտ:
Դուք ապրում եք, կա՛ք,
Դուք կյանք եք ու կա՛մք,
Դուք գվարդիական քաջամարտիկնե՛ր,
Ձեր հավատն հաղթեց,
Հայրենի հողը հավետ կօրհնի ձեզ:
Ձեզ մոտ են գալիս բոլոր կողմերից
Եղբայրներ, քույրեր:
Ծաղկուն է ահա Կրասնոդոնը ձեր,
Բայց վշտի ծուխն է
Բարձրանում կարծես ածխահորերից,
Կապույտ երկինքը մթնում է մի պահ,
Հեռվում հուզվում է Դոնը անսահման,
Ու մեր ցասումը դառնում է երդում՝
Ապրել ձե՛զ նման...





# ԼԱՏՎԻԱԿԱՆ ՍՍՀ

Այնտեղ, ուր Դաուգավա գետը թափվում է Բալթիկ ծովը, արդեն ութ դար կանգնած է Ռիգան՝ Լատվիայի մայրաքաղաքը: Ռիգան կարծես խորհրրդանշում է լատիշ ժողովրդի անցած պատմական ճանապարհը: Քաղաքում ամեն քայլափոխի կարելի է հանդիպել ամենատարբեր ժամանակաշրջանների ու ոճերի հուշարձանների՝ սկսած Հին Ռիգայի միջնադարյան տներից ու նեղլիկ փողոցներից, մինչև այսօրվա նորակառույց շքեղ ու լուսահորդ շենքերը: Եվ երբեք Ռիգան չի ապրել այնքան լիարյուն ստեղծագործական կյանքով, ինչպես այսօր: Լատվիայի մայրաքաղաքը գիտական ու մշակութային կենտրոն է, խոշոր ձեռնարկություններով արդյունաբերական քաղաք ու առաջնակարգ ծովային նավահանգիստ:

Այո, Լատվիան ծովային հանրապետություն է: Դժվար է գտնել մի լատիշ տղայի, որ չի երազում. նավաստի դառնալ: Բայց սխալ կլիներ կարծել, որ միայն ծովն է գեղեցիկ Լատվիայում և բնորոշ այս հանրապետությանը: Հեռանում ենք ծովից և Լատվիայի բնությունը մեկը մյուսի ետևից նոր հրաշքներ է բացում մեր առաջ: Ցածրադիր հարթավայրերը ընդհատվում են կանաչ բլուրներով, որոնց բարձունքներում համարյա միշտ կարելի է տեսնել միջնադարյան դղյակների ավերակներ: Բլուրի բարձունքից բացվում են հեռավոր հորիզոններ, անտառների համատարած կանաչը, հարյուրավոր լճերի հայելիները և հանդարտահոս գետերի արծաթյա ժապավենները: Եվ ինչպես Ռիգայում, ամբողջ հանրապետությունում նույնպես, բնության հրաշալիքների ու հին հուշարձանների կողքին առավել ցայտուն ամեն քայլափոխի իրեն զգացնել է տալիս լատիշ ժողովրդի ներկան: Դրա համար բավական է լինել Լատվիայի ցանկացած քաղաքում ու գյուղում, մտնել յուրաքանչյուր տուն ու գործարան, կարդալ ու տեսնել լատիշ պոետների ու նկարիչների ստեղծագործությունները:

Այո, իրականացել է լատիշ մեծ պոետ Յան Ռայնիսի մարգարեությունը, որ իր երկրի ու ժողովրդի համար գուշակում էր լուսավոր ու լայն ապագա:



## ՁԿՆՈՐՍՆԵՐԸ

*ՄԱՐԱ ԳՐԻԵԶԱՆԵ*

Սիրում եմ, սիրում եմ ձկնորսներին,
Խոպոտ կանչերը նրանց նավերի,
Եվ թեփուկները ցանցերում թափված,
Որ նմանվում են փոքրիկ պայտերի:
Ծովի փրփուրը՝ ճերմակ ավելի,
Քան հավերժական ձյունը սահերի:
Սիրում եմ, սիրում եմ ձկնորսներին,
Ուղևորներին անխոնջ ու արի,
Որ ցանցերի մեջ պահում են աղոտ
Լույսը լուսնյակի և աստղերի:
Սիրում եմ, սիրում եմ ձկնորսներին,
Նրանց կամքն ուժեղ, գործն հերոսական,
Եվ փարոսներն եմ սիրում մշտավառ՝
Բարությամբ լցված սրտերի նման:

*Թարգմ. ՆԱՆՍԵՆ ՄԻՔԱՅԵԼՅԱՆԻ*



## ՀԱՆԵԼՈՒԿՆԵՐ

Երեսուներկու եղբայր
Աղում են միալար,
Իսկ մեկը պլյուրն է
Տանում անդադար:

*(Ատամներն ու լեզուն)*

Փոքրիկ խրճիթում՝
Լիքը տղաներ,
Բոլորն էլ ունեն
Սև-սև գլուխներ:

*(Լուցկու տուփ)*

Ծերմակ տան մեջ՝
Արծաթ տոպրակ,
Տոպրակի մեջ՝
Ոսկե գնդակ:

*(Ձու)*

Մտավ սենյակ,
Կուզիկ-մուզիկ պար եկավ,
Գնաց մենակ,
Սուսիկ-փուսիկ թաք կացավ:

*(Ավել)*

Աշխատասեր
Երեք ընկեր
Վար են անում մի խոփով,
Սերմ են ցանում մի ափով:

*(Երեք մատները գրելիս)*

*Թարգմ. ՍՈՂՈՄՈՆ ՄԿՐՏՉՅԱՆԻ*

# ԻՆՉՊԵՍ Է ԱՌԱՋԱՑԵԼ ԴԱՈՒԳԱՎԱ ԳԵՏԸ

## (ԼԱՏԻՇԱԿԱՆ ՀԵՔԻԱԹ)

Վաղուց, շատ վաղուց, անհիշելի ժամանակներում գազաններն ու թռչունները անգործությունից անընդհատ վիճում ու կռվում էին: Եվ որպեսզի վերջ տան անախորժություններին, նրանք որոշեցին մի կարևոր գործ անել՝ փորել Դաուգավա գետի հունը: Միայն անձրևասեր պիրոլ թռչունը չհամաձայնեց փորել:

— Իմ ինչի՞ն է պետք գետը, երկնքից թափվող անձրևն էլ ինձ հերիք է,— ասաց նա և թաքնվեց թփուտներում:

Իսկ գազաններն ու թռչունները եռանդով գործի անցան: Նապաստակը վազում էր ու ցույց տալիս գետի ուղղությունը: Եվ որովհետև նապաստակը ուղիղ վազել չգիտի, Դաուգավան էլ այդպես ոլորապտույտ ստացվեց: Նապաստակի ետևից վազում էր աղվեսը և իր փարթամ պոչով Դաուգավայի ափերն էր գծում: Հողափոր խլուրդը փորում էր հունը: Գորշուկը գնում էր խլուրդի ետևից և գետի հունն էր լայնացնում: Արջը որովհետև ամենից ուժեղ էր՝ դուրս էր հանում փորված հողը և կիտում գետի ափերին: Հիմա էլ Դաուգավայի ափերին այդ բլուրները դեռ կան: Մյուս բոլոր թռչուններն ու կենդանիները վեճերը մոռացած՝ աշխատում էին, ով ինչքան կարող էր: Երբ գետի հունը փորել վերջացրել էին, հավաքվեցին տեսնելու, թե ով ինչպես է աշխատել: Խլուրդն ու արջը այնպես ջանասիրաբար էին աշխատում, որ չհասցրեցին նույնիսկ իրենց վրայի փոշին թափ տալ:

— Դուք ամենաաշխատասերն եք,— ասացին բոլոր կենդանիներն ու թռչունները,— և կարող եք ընդմիշտ կրել ձեր աշխատանքային հագուստները:

Եվ արջն ու խլուրդը այդ օրից մուգ գույնի մուշտակով են: Գայլը և՛ թաթերով էր փորում, և՛ ժանիքներով: Նրա դունչն ու թաթերը սև թողեցին, որպեսզի բոլորը իմանան, թե ինչ լավ է աշխատել գայլը:

Ջանասիրության համար գովեցին նաև սագին ու բադին: Նրանց թույլատրվեց լողալ ու լվացվել որքան կամենան: Իսկ մյուս թռչունները, որ այնքան էլ եռանդով չէին աշխատել, միայն գետի ջրից խմելու իրավունք ստացան: Անձրևասեր պիրոլ թռչունը առաջվա նման ցատկոտում էր ծառի ճյուղին և սուլում:

— Ես հո չէի՞ կարող իմ գեղեցիկ, դեղին հագուստներով այդպիսի աշխատանք կատարել,— ասում էր նա:

Գազաններն ու թռչունները բարկացան և խիստ պատիժ որոշեցին.

— Թող պիրոլը երբեք մաքուր ջուր չխմի ո՛չ ջրհորից, ո՛չ գետից, այլ թող հագեցնի ծարավը անձրևի կամ ցողի կաթիլներով:

Ահա այդ պատճառով պիրոլը միշտ տռչորվում է ծարավից և, երբ մյուս թռչունները ամպրոպ նախազգալով՝ լռում են, պիրոլը խղճալիորեն սկսում է ճչալ, անձրև խնդրել:

Ագռավն էլ էր ծուլացել, չէր մասնակցել գետի հունը փորելուն: Այն ժամանակ նրա փետուրները ճերմակ էին, և որպեսզի ոչ ոք չիմանա, որ ինքը չի աշխատել, ագռավը թավալվեց ցեխի մեջ: Բայց բոլոր թռչուններն ու կենդանիները հասկացան նրա խորամանկությունը, և երբ ագռավը ցանկանում էր լվացվել, քշեցին նրան գետի մոտից: Ագռավը լվացվելու տեղ չգտավ և մնաց այդպես սև: Ձայնն էլ դարձավ կոպիտ ու տհաճ:

*Թարգմ. ՖԵՆԻՔՍ ՍԱՐԴԱՐՅԱՆԻ*

# ԼԱՏԻՇԱԿԱՆ ՄԱՆԿԱԿԱՆ ՀՈՒՄՈՐ

Փոքրիկ Յանիսին մի խնձոր տվեցին և ասացին.
— Քույրիկիդ հետ եղբայրաբար կիսի՛ր:
— Ի՞նչ է նշանակում՝ եղբայրաբար:
— Այսինքն՝ մեծ բաժինը պետք է քույրիկիդ տաս:
Յանիսը մտածեց ու ասաց քրոջը.
— Քույրի՛կ, վերցրո՛ւ եղբայրաբար կիսիր:



— Ինչո՞ւ ես մնդքան քնում,— հանդիմանում է հայրը որդուն:— Հարևանի տղան վաղ առավոտյան հինգ ռուբլի է գտել ցանկապատի տակ:
— Ի՞նչ օգուտ շուտ զարթնելուց,— ասաց տղան: —Չէ՞ որ փող կորցնողը ավելի շուտ է զարթնել:



Առաջին դասարանցի Անտան կանգնել էր ճանապարհի եզրին ու լաց էր լինում:
— Ի՞նչ է պատահել, փոքրի՛կ,— հարցրեց մեկը նրան:
— Մայրիկս պատվիրել է, որ քանի դեռ ճանապարհով սայլը չի անցել, ես չանցնեմ մյուս մայթը: Արդեն կես ժամ է սպասում եմ, բայց ոչ մի սայլ չի երևում:



— Երեխանե՛ր, մի՞թե չեք կարող այնպես լուռ նստել, որ լսվի, թե ինչպես է ասեղը հատակին ընկնում,— ասաց ուսուցիչը:
Դասարանում լռություն տիրեց: Ապա վերջին նստարանից Պետերիսը կանգնեց ու ասաց.
— Ուսուցի՛չ, վերջապես ե՞րբ եք ասեղը հատակին գցելու:



— Քանի՞ եղբայր ունես,— հարցրեց կալվածատերը այգեպանին:
— Մի,— ասաց այգեպանը:
— Տարօրինակ է: Իսկ ինչո՞ւ քույրդ երեկ ասաց, որ ինքը երկու եղբայր ունի:

Ամբարտավան հարուստը ճանապարհին հանդիպեց մի գյուղացու:
— Ճանապա՛րհ տուր,— հրամայեց հարուստը:
— Դուք էլ, պարո՛ն, ստիպված եք մի քիչ կողքի թեքվել:
— Ես ամեն հիմարի ճանապարհ չեմ զիջում:
— Իսկ ես հիմարին միշտ ճանապարհը զիջում եմ,— ասաց գյուղացին և մի կողմ քաշվեց:



— Ամո՛թ է, տղա՛ս, նույն դասարանում երկու տարի նստել,— ասում է հայրը:
— Ինչո՞ւ է ամոթ, մեր ուսուցիչը արդեն տասը տարի է նստում է նույն դասարանում:



— Ասացե՛ք, խնդրեմ, ուսուցի՛չ, աշակերտին պատժո՞ւմ են, եթե նա ոչինչ չի արել:
— Իհարկե, ո՛չ:
— Ա՜յ, դա լավ է: Ես այսօր ոչ մի դաս չեմ սովորել:



Դպրոցում մի քսակ գտան: Ուսուցիչը երեխաներին հարցրեց.
— Ո՞վ է քսակ կորցրել:
— Ես,— ասաց մի տղա:
— Ինչպե՞ս կապացուցես, որ քսակը քոնն է:
— Իմ գրպանում մեծ ծակ կա:



Չարաճճի մի տղա տուն եկավ քրքրված հագուստով:
— Որտե՞ղ ես հագուստներդ այդպես պատռել,— հարցրեց հայրը:
— Վազքով մրցում էի նապաստակի հետ:
— Եվ ո՞վ հաղթեց:
— Սար բարձրանալիս՝ նապաստակը հաղթեց, իսկ սարից իջնելիս՝ ես պարտվեցի:

## ՄՐՑԱՆԱԿԱԲԱՇԽՈՒԹՅՈՒՆ

Ի նշանավորումն ՍՍՀՄ կազմավորման 50-ամյա տարեդարձի, ՀԼԿԵՄ Կենտկոմը և «Պիոներ» ամսագրի խմբագրությունը համատեղ հայտարարում են մանկական ստեղծագործությունների՝ պատմվածքի, բանաստեղծության և նկարչության մրցանակաբաշխություն: Մրցանակաբաշխությանը կարող են մասնակցել դպրոցական տարիքի բոլոր պատանի ստեղծագործողները: Ստեղծագործությունները պետք է արտացոլեն մեր մեծ, բազմազգ Միության ժողովուրդների եղբայրությունը, բարեկամությունն ու համատեղ աշխատանքի շնորհիվ գիտության ու տեխնիկայի բնագավառում ձեռք բերված նվաճումները: Ինչպես նաև պիոներ-դպրոցականների լավագույն գործերն ու հարուստ տրադիցիաները այդ ուղղությամբ:

Մրցանակաբաշխությունում հաղթողները կպարգևատրվեն հանրապետական պիոներական խորհրդի պատվոգրերով, Արտեկ համամիութենական պիոներական ճամբարի ուղեգրերով և հուշանվերներով:

Մրցանակ շահած լավագույն ստեղծագործությունները կտպագրվեն մեր ամսագրում:

Նյութերը պետք է ներկայացնել մինչև 1972 թ. դեկտեմբերի 20-ը, խմբագրության հասցեով:

# ԻՆՉ-ՈՐ ԹԱԳԱՎՈՐԻ ՏՂԱ ԷՐ ՍՊԱՆՎԵԼ

## («ԵՐԿՐՈՐԴ ԿՅԱՆՔ» ԳՐՔԻՑ)

*ՆԱԻՐԻ ԶԱՐՅԱՆ*

*Նկ. ՀԱԿՈԲ ՀԱԿՈԲՅԱՆԻ*

Արևի խավարումից մի քանի շաբաթ հետո լուր տարածվեց, որ հեռավոր Սերբիայի Սարաևո քաղաքում ինչ-որ թագավորի տղա են սպանել և այդ առիթով մեծ տերություններն սկսել են իրար հետ կռվել:

Թուրքիան նույնպես կռվի մեջ էր մտել և զորք էր հավաքում: Հուրիաթի օրենքով հայ ազգը նույնպես պետք է զորք տար տերության բանակին: Հուրիաթից առաջ հայերը զորք չէին տալիս, նրանք զենք բռնելու իրավունք չունեին: Հուրիաթը նրանց այդպիսի իրավունք տվեց, և կառավարությունը Խառակոնիսից բազմաթիվ երիտասարդներ տարավ լցրեց իր բանակը՝ ռուսների դեմ նրանց կռվեցնելու համար: Դա բնավ դուր չէր գալիս մեր գյուղացիներին, և կանայք ամեն օր երեսները հաչակնքում էին ու անիծում.

— Բարով-խերով չգա՛ր էդ Հուրիաթը...

— Բա հայ ազգը ռուսի դեմ կկռվի՞...

Զինվոր տանելը դեռ աղետի կեսն էր: Իսկական աղետն սկսվեց այն ժամանակ, երբ կառավարությունը հրամայեց, որ գյուղացիները իրենց եզներով ու սայլերով զենք ու պարեն տեղափոխեն կռվի հեռավոր ճակատները: Բոլորը գիտեին, որ գնացողներն այլևս չեն վերադառնա՝ ո՛չ զինվորները, ո՛չ սելվորները:

Գյուղի վրա նստեց պատերազմական ցուրտ ու ծանր մի ձմեռ: Զորամասեր էին անց կենում մեր գյուղով ու գնում էին Խոյի ռազմաճակատը:

Թուրք բանակի ասկյարները հայկական կոտորածների ձայնը դեռ չէին լսել, միամիտ երիտասարդներ էին և մեզ հետ լավ էին վարվում: Նրանք մի քանի անգամ եկան մեր տուն, ուտելիք խնդրեցին, դիմացը կանացի թաշկինակներ ու գրպանի գրչահատներ առաջարկեցին, անիծեցին պատերազմը ու երգեցին միշտ նույն երգը.

Էն Հասան-Կալուն ամրոց է հսկա,
Բայց ռուս ասկյարին թիվ համար չկա...
Մի՛ լար, իմ մայրիկ, ճամփեն չգիտեմ,
Գուցե աշխարհում քեզ կհանդիպեմ...

Մեր ամբողջ թաղը տագնապով ապրում էր ռես-Խաչոյի ավագ որդու՝ Գևորգի ճակատագիրը: Նա զինվորացու էր, բայց խուսափում էր ներկայանալուց: Նա տառապում էր աչքերի մի հիվանդությամբ, որ կոչվում էր հավկուր, այսինքն՝ արևի մայր մտնելուց հետո բան չէր տեսնում թեկուզ և արհեստական լույսով: Գյուղում բոլորը գիտեին Գևորգի այդ հիվանդությունը և համոզված էին, որ բանակում նա կկործանվի: Թուրքերը հաշվի չէին նստի նրա աչքերի հիվանդության հետ, նրան կհամարեին կեղծ հիվանդ և...

Խեղճ Գևորգ, երկար թաքնվեց գոմշի մսուրներում, դարմանի մարագներում, հարևանների տանը, չօգնեց, նրան հայտնաբերեցին ու տարան: Գյուղը կարծես նոր մտավ իսկական սուգի մեջ: Կարծես մենք նոր իմացանք, թե ինչ է նշանակում պատերազմ և օսմանյան կառավարություն: Գևորգի հիվանդության վկայականը չհարգեցին, նրան վերցրին բանակ և ռես-Խաչոն ծանր տուգանքի ենթարկվեց իր որդուն վաթանի պաշտ-



### ԱՇՈՒՆ

*ՎԱՀԱԳՆ ԿԱՐԵՆՑ*

Զագերի հետ երամ-երամ,
Ծամփաներով կապույտ,
Թռչուններն են չվում հարավ,
Թողած բներ թափուր:

Հովիտներում ծառեր են մերկ,
Չի մնացել ոչինչ,
Ո՛չ կանաչ գույն, ո՛չ կանաչ երգ,
Ո՛չ գիշերները ջինջ:

Գետակներն են միայն վիճում
Տխրության հետ աշնան,
Ղողանջում են մթին կիրճում
Պաղ զանգերի նման...

պանության գործից հեռու պահելու, նրա դասալքությունը հովանավորելու համար:

Մենք խեղճ Գևորգին արդեն կորած էինք համարում: Գևորգի մայրը՝ Սուսամբար խաթունը, մայրս, մորքուր Շամամը և մեր մյուս հարևանուհիները նըստում էին Աղտաշցու տանը, Գևորգի համար լաց էին լինում, մխիթարում էին նրա երիտասարդ սիրուն կընոջը, որի անունը նույնպես Հուրիկ էր, ինչպես իմ մոր անունը, և վերհիշում էին նրանց հարսանիքի օրերը:

Ես լավ եմ հիշում այդ հարսանիքը, որ տևեց երեք օր ու երեք գիշեր: Աղջկան բերին Արչակից, հարսանքավորներից առաջ երևաց մի հեծյալ երիտասարդ, որ կոչվում էր աղվես: Սրա խնդիրն էր զգուշացնել, որ հարսանքավորներն արդեն մոտենում են գյուղին: Դրա համար նա քիրմանի շալ ստացավ իբրև ընծա:

Մայրս իմ ձեռքերին հինա դրեց և տարավ հարսանիք: Այնտեղ ինձ համար շատ անախորժ մի խոսակցություն սկսվեց: Սուսամբար խաթունը գլուխս շոյում էր և շարունակ ասում. «Աղջիկս մեծանա, պսակենք Հայաստանի հետ»: Մայրս պատասխանում էր՝ աստըծով: Իսկ ես նրանց աղջկան տանել չէի կարողանում:

Փեսայի գլխին թագ դրին, այսինքն՝ գույնզգույն թելերից շուրջը հյուսած մի ցցոնք ամրացրին նրա քոլոզի շուրջը փաթաթված աբրեշումե ծոպավոր փուշուն: Հարսի գլուխը ծածկեցին քողով, երկուսին էլ ձիեր նստեցրին և դանդաղ հանդիսավորությամբ գյուղի գլխավոր փողոցով տարան ժամ:

Իմ հասակակիցները մեծահասակներին խառնված, իրենց հինայոտ ձեռքերը թափահարելով պարում էին հարսանեկան թափորի առաջ:

Պսակից հետո ձիարշավ եղավ գոմշակովի հրապարակում: Մասնակցում էին քրդերը և մի քանի ռեսի տղա, որոնք ժամանակին կառավարությունից հատուկ թույլտվություն էին ստացել ձի պահելու համար: Ձիարշավի մեջ աչքի ընկավ մեր արտերի պահապան Չայդոն: Սա կռանում էր և ձիու փորի տակով մյուս կողմից բարձրանում թամբին:

Հարսնեղբայրը հարբած էր, ձիուց ընկավ, և նրա գլխին կժերով ջուր էին լցնում...

Այդ երջանիկ անցյալ դեպքերը հիշում էին կանայք ու լաց լինում: Միայն իմ մայրն էր գտնում մխիթարանքի խոսքեր:

— Բան չկա՛, Սուսա՛ն,— ասում էր նա դժբախտ Գևորգի մորը:— Գևորգը արդար տղա է, սուրբ Գևորգը նրան կպահպանի, մինչև ռուսները վրա հասնեն, հայ ազգն ազատեն թուրքի գերությունից: Ես այս գիշեր երազ եմ տեսել...

Մայրս ամեն օր բարձրանում էր տանիք և նայում սարերին, որպեսզի ռուսների գալը ինքն առաջինը տեսնի և աչքալույս տա Սուսամբար խաթունին:



Մի անգամ ես էլ մորս հետ բարձրացա տանիք և սկսեցի նայել Գյադուկի կողմը: Ռուսների գալը չըտեսա: Բայց լսեցի գլխիս վերևում, ամպերի մեջ, մի տրտասովոր դղրդոց: Կարծես թե հսկայական մի սայլ էր անցնում, ինքը չէր երևում, բայց աղմուկով լցրել էր ամբողջ երկինքը:

— Էս ի՞նչ է, Հայե՛ր ջան,— զարմանքով ու սարսափով հարցրեց մայրս:

— Օդապարիկ է,— բացատրեցի ես:— Ես իմ դասագրքում կարդացել եմ դրա մասին:

— Թուրքերի՞նն է, թե՞ ռուսներինը:

— Ռուսներինն է,— պատասխանեցի ես:— Թուրքն ի՞նչ է, որ օդապարիկ ունենա:

Գյուղում բոլորն էին լսել ամպերի միջով անցած ինքնաթիռի աղմուկը և բակերում հավաքված խոսում էին այդ մասին:

— Էդ ռուսներն են թռել մեր գեղի գլխով,— բոլորին հուսադրում էր մայրս,— մեզ իմաց տվեց, որ շուտով կգան մեզ թուրքի կոտորածից ազատելու:

Կոտորածները հեռավոր գյուղերում արդեն սկսվել էին, և մեր գյուղը տագնապով սպասում էր, թե ինչ կլինի հետո...

Գյուղում տարածվեց ահավոր լուրը. թուրքերը Նահանջում են՝ հայկական գյուղերը կոտորելով ու կողոպտելով:

Ասում էին, քրդական մի աշիրաթի պետ՝ Բշերե Չաթոն կռվում սպանված է, նրա զորամասը Չաթոյի քրոջ որդի Ամարի Կյակոյի ղեկավարությամբ ռազմաճակատից ետ է գալիս և սպանված Էլ-Աղասու վրեժը թափում է հայկական գյուղերի վրա:

Պարոն Շիրինի ուղարկած մարդը Մանդանից վերադարձավ ու պատմեց, որ Ամարի Կյակոն իր աշիրաթով գիշերել է Մանդանում և այսօր երեկոյան կգա Խառակոնիս:

Մեր գյուղի մեծամեծները հավաքվեցին ռես-Խաչոյի հոդնյում՝ որոշելու համար, թե ինչպես պետք է դիմավորել ջարդարար հրոսակներին: Շիրինը կարգվեց Խառակոնիսա զինված ուժերի ղեկավար: Մենք ճաղերի ետևից լսում էինք մեծերի խոսակցությունը: Նրանք մեզանից չէին թաքցնում իրենց անելիքները: Գիտեին, որ մենք՝ պատանիներս, իրենցից պակաս չենք ուզում գյուղը պաշտպանել կոտորածից և իհարկե ոչ մի գաղտնիք չենք մատնի թշնամուն: Պարոն Շիրինն ասաց.

— Խառակոնիսում կա մոտ հարյուր հիսուն հրացան ու մաուզեր: Մեր զինված ուժը դուրս կգա գյուղից ու կթաքնվի գյուղեզրյա տներում: Քրդերին կընդունենք աղ ու հացով, ցույց կտանք առատ հյուրասիրություն: Եթե իրենց հանգիստ պահեցին, ինչքան ուզում են, թող մնան ու խաղաղությամբ հեռանան գյուղից: Հենց որ նկատեցինք որևէ չար մտադրություն, կշրջապատենք ամբողջ հրոսակախումբը ու կոչնչացնենք մինչև վերջին մարդը:

Շիրինի այս ծրագիրը լիակատար հավանություն գտավ գյուղի մեծամեծերի կողմից: Միայն ռես-Խաչոյի Հովոն, որ ավագ եղբորը բանակ տանելուց հետո ժառանգել էր նրա «Մոսինը», ինքն իրեն խրախուսելու համար ավելացրեց.

— Մի օր ծնվել ենք, մի օր կմեռնենք:

Հովոն այն ժամանակ տասնինը տարեկան էր, բեղերը նոր ծլած, բարակ, բարձրահասակ երիտասարդ:

Ամարի Կյակոն իր խմբով Խառակոնիս մտավ Նախրատեղի կողմից, արևմտոցի ժամանակ: Ցուրտ, պայծառ ձմեռային երեկո էր: Քրդերի զենքերն ու ձիերի պայտերը փայլում էին մայր մտնող արևի տակ: Առջևից, մոխրագույն գեղեցիկ ձիու վրա, գնում էր ինքը՝ Ամարի Կյակոն, մթաբեղ, մթահոն գեղեցիկ մի երիտասարդ, որ իր սև փայլուն աչքերը ոլորում էր այս ու այն կողմ և ուրախ աչքով էր անում իր խմբի կողքերից վազող երեխաներին:

Երիտասարդ Էլ-Աղասու ետևից տանում էին թամբած ու գեղեցիկ սպիտակ մի ձի: Դա սպանված աշիրաթապետի ձին էր, որ չէին հեծնում տիրոջ հանդեպ հարգանք ցույց տալու համար:

Խառակոնիսի կանայք սարսափով էին դիտում այդ անկոչ հյուրերի մուտքը, սակայն չկարողացան թաքցնել իրենց հիացմունքը Ամարի Կյակոյի նկատմամբ.

— Անիծվածը խորոտ է ոնց որ սուրբ Սարգիս...

Մեր գյուղացիք Շիրինի գլխավորությամբ աղ ու հացով դիմավորեցին հրոսակախումբը և անմիջապես տեղավորեցին գյուղի ամենանշանավոր հոդաներում: Էլ-Աղասուն իր մերձավորների հետ մեկտեղ բերին ռես-Խաչոյի հոդան: Դրանք մոտ տասնհինգ հոգի, հաղթանդամ, չուռ քյաղախիկներ հագած, խաչփակ պատրոնդաշներ կապած, երկար, սև բեղերով քրդեր էին: Նրանք անմիջապես իրենց հագուստն ու զենքերը հանեցին և անձնատուր եղան հանգստի:

Գյուղ մտնելու ժամանակ մերոնք նրանց հաշվել էին, և լուր տարածվեց, որ ընդամենը հարյուր ձիավոր են: Խառակոնիսցիք հանգստացան, որովհետև մենք զինվածների թվով քրդերին գերազանցում էինք: Նրանք մեր գյուղացիների խաղաղ և ինքնամփոփ



վերաբերմունքից երևի կռահեցին, որ Խառակոնիսը կոտորելու և կողոպտելու գյուղ չէ, ուստի պահում էին իրենց միանգամայն զգույշ և քաղաքավարի: Մինչև անգամ սկսեցին պատերազմն անիծել և Բշերե Չաթոյի մասին նոր հորինած իրենց խաղերը կանչել:

Նրանցից մեկը հիանալի ձայն ուներ և ասաց մի խաղ, որ ես շատ անգամ լսել էի իմ հանգուցյալ հորից.

Այս կռիվը Մարսելայի դաշտերումն էր, հերկի միջին.
Ջիլ կրակոցն այնալույի համազարկեց մաուզերին:
Այս իրիկուն՝ վա՜յ տնքալով ու նվալով մեռնողներին:
Գերի ընկա, լե՜-լե՛, վա՛յ-լե՛, պանդուխտ ընկա, վա՜յ իմ օրին:

Երբ նա երգում էր, ես նայում էի Ամարե Կյակոյի դեմքին: Նա նստած էր հոդայի վերևը, բուխարիկի մոտ, ռես-Խաչոյի դեմ-դիմաց: Նա նկատեց իրեն հառած իմ հայացքը, գեղեցիկ սպիտակ ատամները բաց անելով ծիծաղեց և ինձ աչքով արեց: Իմ գլխով անցնում էին զանազան անորոշ մտքեր: Մի՞թե այս Ամարի Կյակոն կարող է մարդ սպանել: Մի՞թե այս մարդիկ, որ իմ հոր խաղերն են ասում, որ մեզ նման ողբում են իրենց հարազատների մահը, որ մեզ նման հոգնում են և նարիք են զգում հանգստանալու, մեզ նըման մրսում են և կարիք են զգում տաքանալու, մեզ նման սովածանում են և կարիք են զգում իրենց քաղցը հագեցնելու: Մի՞թե այս մարդիկ մեզ կսպանեն, եթե մենք զենք և մեր կյանքի համար կռվելու կարողություն չունենայինք...

Ամարի Կյակոն Խառակոնիսին մեծագույն զարմանքը պատճառեց առավոտյան, երբ քնից արթնացավ և սկսեց լողանալու պատրաստություն տեսնել: Նա հրամայեց, որ դրսում, բաց երկնքի տակ խոտ փռեն և վրան փայտի աթոռ դնեն: Շորերը հանեց և բոլորովին մերկ նստեց այդ աթոռին: Բարիկենդանի կտրող սառնամանիք էր: Թքեիր, գետին չհասած կսառչեր: Երիտասարդ էլ-Աղասին հրամայեց, որ տաք ջուր լցնեն իր վրա: Կաթսաներով տաք ջուր լցրին, և նա օճառով լողացավ: Հետո հրամայեց, որ վրան սառը ջուր լցնեն: Կժերով սառը ջուր լցրին, և նա սառնամանիքի մեջ կարմրեց ինչպես երկաթե բարկ հնոցում: Հետո նա բրդոտ երեսսրբիչով շփեց իր մարմինը, շորերը հագավ, գլխին դրեց իր սև մետաքսյա ապարոշը, զենքերը կապեց, երեխաներին ուրախ աչքով արեց ու հեծավ ձին:

Նրա հեծյալները կազմ ու պատրաստ արդեն ըսպասում էին փողոցում: Ամարե Կյակոն ռես-Շիրինին և Խառակոնիսի մյուս մեծամեծերին խոնարհություն արեց, հետները ողջագուրվեց, նորից ու նորից գոհունակություն հայտնեց հյուրասիրության համար և իր խմբի առաջն ընկած հաշտ ու խաղաղ հեռացավ Խառակոնիսից: Մեր գյուղացիները նախրատեղում կանգնած երկար նայում էին նրանց ետևից:

*Արեգակնային համակարգի*
*մոլորակները*

## ՈՒՐԱՆ

Մինչև այժմ մենք ծանոթացել ենք այն մոլորակների հետ, որոնք մարդկությանը հայտնի են շատ վաղուց: Երկար ժամանակ, նույնիսկ հեռադիտակի գյուտից հետո, աստղագետները նոր մոլորակ չէին հայտնագործում: Այդ պատճառով էլ մեծ տարածում ուներ այն կարծիքը, թե Արեգակնային համակարգը վեց մոլորակ ունի: Ահա թե ինչու, երբ 1781 թ. անգլիացի աստղագետ Հերշելը հայտնաբերեց անծանոթ երկնային մարմին, այն համարեց գիսաստղ: Հետագայում միայն ֆրանսիացի աստղագետ Լապլասը ապացուցեց, որ դա մոլորակ է: Նոր մոլորակը ստացավ հռոմեական աստված Ուրանի անունը:

Ուրանը պտտվում է Արևի շուրջը 2872 միլիոն **կմ** միջին հեռավորության վրա, մի լրիվ պտույտ կատարելով 84,02 երկրային տարվա ընթացքում: Տրամագիծը 47100 **կմ** է: Ծավալով 50,6 անգամ մեծ է Երկրից: Մթնոլորտը կազմված է ջրածնից և մեթանից:

Ի տարբերություն մյուս մոլորակների, Ուրանի առանցքը ուղեծիրի նկատմամբ թեքված է 98 աստիճանով, որի հետևանքով, 21 տարվա ընթացքում, փոխվում է տարվա եղանակների բնույթը: Ուրան հասած տիեզերագնացները շատ կզարմանան, երբ տեսնեն, որ Արևը տարիներ շարունակ կանգնած է ուղիղ Հյուսիսային բևեռի վրա, Հարավային բևեռում խավար է, իսկ հասարակածում՝ մթնշաղ: 21 տարի անց Արևը լինում է հասարակածում, երկու բևեռները թողնելով մթնշաղի մեջ: Նորից 21 տարի, և Արևը լուսավորում է Հարավային բևեռը:

Ուրանի և նրա արբանյակների մի կարևոր առանձնահատկությունն էլ այն է, որ նրանց շարժումների ուղղությունը հակառակ է համակարգում գտնվող մյուս մարմինների շարժման ուղղությանը:

Ուրանն ունի հինգ արբանյակ. ամենամեծերը՝ Տիտանիան (տրամագիծը 1600 **կմ**) և Օբերոնը (տրամագիծը՝ 1450 **կմ**) 1787 թ. հայտնաբերել է Հերշելը, իսկ մյուս երկուսը՝ Լասելը, 1851 թ.: Ամենափոքր արբանյակ Միրանդան հայտնագործվել է 1948 թ.:

ՍՏԵՂԾԱԳՈՐԾՈՒՄ ԵՆ ԴՊՐՈՑԱԿԱՆՆԵՐԸ



## ԽՈՏՀՈՒՆՁ

Այգը աչքով է անում ծաղկառատ հանդին,
Հայրս ճամփա է ընկնում՝ ուսած գերանդին:

Վերջին աստղիկն է հեռվից ողջունում լույսին,
Դաշտը երկինք է թվում, գերանդին՝ լուսին:

Արևը վեր է թռչում (ասես տենդ ունի),
— Վա՜հ, էս հնձվորը քուն,դադար չունի՞:

Փաթիլ-փաթիլ հնձվելով, մթնում է օրը,
Խոտը դեզին է մնում, բուրմունքը՝ հորս:

ԱՆԱՀԻՏ ԱՆԱՆՅԱՆ
*Նոյեմբերյան, Կողբի դպր., 9-րդ դաս. աշ.*

## ԵՐԿՏՈՂԸ

Ես գիտեմ, թե ինչ բան է մագնիսը: Որոշ բան էլ հասկանում եմ Ֆարադեյի օրենքներից և մագնիսացման հատկություններից, բայց այդ մեկը չկարողացա հասկանալ:

Գրականության դաս է: Խոսում է ուսուցչուհին: Թեման տխուր է: Մենք էլ ենք տխուր: Ես նստած եմ երկրորդ նստարանին, բայց տեղի համեմատ բավականին բարձրահասակ եմ: Ուսուցչուհին պատմում է՝ աչքերի անհուն խորությամբ ընդգրկելով ողջ դասարանը: Բայց նա շուտ-շուտ ինձ է նայում, իսկ ես, թվում է, լսում եմ աչքերով: Հանկարծ ինչ-որ մեկը թմբկահարեց մեջքս, և ես անմիջապես մի դար առաջ ցատկելով՝ ընկա մեր շատ սովորական դասարանը: Ետևի տղան թուղթ էր փոխանցել: Ես չհասցրի կարդալ, որովհետև ուսուցչուհին ինձ էր նայում, և թուղթը շտապ թաքցրի գրպանումս: Մատներս կամաց շոշափեցին թուղթը. այն խնամքով ծալված էր:

«Ո՞վ է ուղարկել: Գուրգե՞նը: Օ՜ֆ, այդ հոգեառը, չէ, ավելի ճիշտ՝ հոգի ուտող, ինչպես կլինի հոգի ուտել-հոգեկեր... Չէ, Գուրգենը զգույշ տղա է, նա այդ չէր անի: Ո՞վ է հապա ուղարկել: Նագիկը: Ուրեմն արդեն հաշտվել է, որ նամակ է ուղարկում: Հետաքրքիր են այդ աղջիկները: Իրենք խռովում են, իրենք հաշտվում: Բայց մի՞թե ժամանակ չի գտել, հենց հիմա՞ պետք է ուղարկեր»:

— Լևո՛ն, ի՞նչ է պատահել, Լևո՛ն, քեզ հետ եմ, ի՞նչ է պատահել:

— Ոչինչ, ընկե՛ր Աբելյան:

— Ինչպե՞ս թե ոչինչ: Ես ասում եմ՝ սովից ու ցրտից լուցկիները ձեռքին մահացավ այդ աղջիկը, իսկ դու անտարբեր ժպտում ես:


ՍՏԵՂԾԱԳՈՐԾՈՒՄ ԵՆ ԴՊՐՈՑԱԿԱՆՆԵՐԸ

 ՍՏԵՂԾԱԳՈՐԾՈՒՄ ԵՆ ԴՊՐՈՑԱԿԱՆՆԵՐԸ

# ԱՐԵՎԸ ԵՎ ՄԱՅՐԸ

*Պիտի որ մեկը զարթնի բոլորից վաղ:*
*Բոլորից վաղ երկնքում զարթնում է արևը:*
*Երկրում բոլորից վաղ արթնանում է մայրը:*
*Արևը երկնքի պատուհանն է բացում,*
*Մայրը՝ տան պատուհանը,*
*Եվ այգալույսն է հորդում*
*Երկնքի պատուհանով ու տան:*
*Արևն այրվում է լուռ,*
*Մայրս սիրում է լուռ:*
*Ու չգիտեն նրանք ինչ է հոգնությունը,*
*Երկուսն էլ համեստ,*
*Կյանքի երկու աղբյուր:*

*ՎԵՐԱ ԱՐԶՈՒՄԱՆՅԱՆ*
*Ստեփանակերտ, 7-րդ դաս. աշ.*





# ՀՈՒՇԱՐԱՐԸ

Աշխարհագրության դաս է: Ես ցանկանում եմ ուշադիր լսել Վահրամին: Նա կմկմում է, մի նախադասությունը մի քանի անգամ կրկնում. երևում է, դասը դարձյալ չի սովորել: Հանկարծ նա լռեց, անօգնական հայացքը շրջեց դասարանում և կանգ առավ ինձ վրա: Ես առանց խղճահարության չէի կարող նրան նայել: Գիտեմ, թե ինչ է ուզում. մի աչքս ուսուցչի վրա՝ սկսում եմ նրան հուշել: Նա չի լսում: Վախս զսպելով, նորից եմ հուշում: Իզո՜ւր: Նա կրնճռոտում է ճակատը, առաջ ձգվում և օրորում գլուխը. իբր, ոչինչ չեմ հասկանում:

— Նստի՛ր, դասդ չես սովորել,— ասում է ուսուցիչը:

Դասամիջոցին Վահրամը մոտենում է ինձ և խռոված ասում.

— Գիտե՞ս, թե ուզում ես հուշել, կարգի՛ն հուշիր: Ի՞նչ ես ձկան պես բերանդ բացուխուփ անում:

Ճիշտն ասած, միայն նա չի բողոքում: Էլի այդպիսի դեպքեր են եղել: Դե, ինչ արած. երևում է հուշարարի շնորհք չունեմ: Էլ չեմ հուշի, որ ոչ ոք ինձնից չնեղանա:

*ՄԱՐԳԱՐԻՏ ՀՈՎՀԱՆՆԻՍՅԱՆ*
*Երևան, 114-րդ դպր.*
*6-րդ դաս. աշ.*

— Ի՞նչ եք ասում, ընկե՛ր Աբելյան, մի՞թե մահացավ...

— Դու չէի՞ր լսում:

— Ներեցե՛ք, ընկե՛ր Աբելյան:

Նստեցի տեղս: Երևի խեցգետինը նախանձեր իմ վառ կարմիր գույնին:

Ես գիտեմ, թե ինչ բան է մագնիսը և որոշ բան էլ հասկանում եմ Ֆարադեյի օրենքներից ու մագնիսացման հատկություններից: Բայց մինչև այժմ մտքովս էլ չէր անցնի, թե թուղթն էլ կարող է մագնիս դառնալ և այն էլ այնքան ուժեղ, որ կաշկանդի և իրեն ձգի մարդկային ուղեղը:

— Լսի՛ր, տուր կարդա՛մ:

Կողքիս նստած տղան է: Ուզում է իմանալ երկտողի բովանդակությունը:

— Մինչև ես չկարդամ, քեզ չեմ տա,— շշնջացի ես:

Նա ձեռքը տարավ գրպանս, որպեսզի վերցնի այն:

— Ձեռքդ հեռո՛ւ տար, ինչպե՞ս կարելի է, սա ինձ են տվել:

— Հարությունյա՛ն,— լսվեց ականջիս շատ մոտ,— դու այսօր քեզ շատ վատ ես պահում: Կխնդրեմ քեզ անկյուն կանգնել, գոնե այնտեղ դու կկենտրոնանաս:

Նման դեպքում ասում են՝ «խե՜ղճ իմ ոտքեր»:

Դա այնքան էլ հաճելի բան չէր, մանավանդ, երբ բոլորը նստած էին: Նազիկը իմ կողմը չէր էլ նայում, կարծես, նա հուզված էր:

«Դե լա՛վ,— մտածեցի ես,— այսուհետև դասի ժամանակ ո՛չ նամակ կգրեմ, ո՛չ կստանամ և ո՛չ էլ կկարդամ: Նազիկը չէ, ով էլ որ գրի»:

Լսվեց փրկարար զանգը: Մոտեցա նստարանին և նստեցի... Բայց մտքումս նորից երկտողն էր: Բացեցի այն և կարդացի.

«Նայի՛ր, ձյուն է գալիս: Աշոտ»:

*ԼԵՎՈՆ ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ*
*Երևան, Մ. Գորկու անվ.*
*դպրոցի 10-րդ դաս. աշ.*

ՍՏԵՂԾԱԳՈՐԾՈՒՄ ԵՆ ԴՊՐՈՑԱԿԱՆՆԵՐԸ ՍՏԵՂԾԱԳՈՐԾՈՒՄ ԵՆ ԴՊՐՈՑԱԿԱՆՆԵՐԸ

# ՊԱԼԱՏ, ՈՐՏԵՂ



յս փողոցը ինձ լավ է ծանոթ: Բարձր սյուներով շքամուտքը՝ նույնպես: Բայց ես կանգնել եմ այն դարբասի առջև, որտեղից ներսուդուրս եմ արել տարիներ շարունակ ու զգում եմ, որ սիրտս սեղմվում է անհասկանալի կարոտից: Ես այստեղ չեմ եղել պիոներական փողկապին հրաժեշտ տալուց ի վեր: Բայց միշտ համոզել եմ ինձ, որ նրանից չեմ բաժանվել ու նրա մասին խոսելիս հպարտությամբ ասել եմ. «Մեր պալատը»: Դրա համար էլ մի տեսակ վիրավորական է, որ էլ քեզ չեն նկատում շուրջդ թովրացող երեխաները, իսկ լավ ծանոթ ծեր դռնապանը առաջին անգամ դիմում է Դուք-ով:

Ուրեմն փոխվել է ամեն ինչ: Տարիները իրոք անցել են և պիոներ-պալատը դարձել է մանկական հուշ: Դժվար է, շատ դժվար է հաշտվել այդ մտքի հետ, բայց բարեբախտաբար ես մենակ չեմ: Կամաց-կամաց ու անշշուկ ներս են մտնում արդեն սպիտակող՝ մազերով Սերգեյ Մերգելյանը, Ղուկաս Չուբարյանը, Գրիգոր Խանջյանը, Վարդգես Պետրոսյանը, Վանիկ Խանամիրյանը, Մետաքսյա Սիմոնյանը, Մաքսիմ Մարտիրոսյանը, Օֆելյա Համբարձումյանը, Ֆրունզե Դովլաթյանը, Աստղիկ Քամալյանը, Հրանտ Ծաhինյանը և շատ ուրիշներ: Հարյուր հիսուն հազար մարդ: Նրանք բոլորն էլ ինձ նման կարկամած են ու բոլորի աչքերում էլ կարոտ ու թախիծ կա: Ամենից շատ հուզված է գավազանով ու կարմիր վզկապով մի ծերունի: Նա հայացքով մեկ-մեկ շոյում է շուրջը պտտվող երեխաներին ու որպեսզի իր հուզմունքը մի քիչ, գոնե մի քիչ թաքցնի, հիշում է այն օրերը, երբ ինքն էլ էր կարմիր վզկապ կապում: Կերազեի՞ն իրենք այսպիսի պալատ:



*Լուսանկարը՝ Մ. ԲԱՂԴԱՍԱՐՅԱՆԻ*

Իրենց ունեցածը շատ փոքրիկ սենյակ էր: Նրան տվել էին «Պիոներական տուն» անունը, բեմ, դահլիճ էին սարքել, նկարել մի մեծ վարագույր, որի վրա ջահ բռնած պատկոմ կար, ջահի վրա մի մեծ աստղ ու պատկոմների անվերջանալի շարքեր, որոնք գնում ձուլվում էին հեռվում ուրվագծվող Մասիսին: Այդ փոքրիկ, անշուք սենյակում երգել ու պարել սովորող երեխաները առաջին անգամ Հայաստանում մանկական օպերա ցուցադրեցին, բեմադրեցին Շիլլերի «Ավազակները» ու Զանգվի մացառուտներում հանդես եկան «Սպարտակ» բացօթյա ներկայացումով: Ինչ խոսք, այդ մեկ սենյակը շատ քիչ էր օրեցօր կրկնապատկվող պատկոմների համար, այդ պատճառով նրանք փոխադրվեցին Աբովյան փողոց, ավելի ուշ՝ Լենինի հրապարակ ու Մարքսի փողոց: Լենինգրադում, Խարկովում, Թբիլիսիում երեխաներին տրամադրվել էին նախկին թագավորների ու փոխարքաների պալատները, իսկ Երևանում քանի դար է, ոչ միայն պալատ, այլև որևէ շքեղ շենք գոյություն չուներ: Դրա համար Աղասի Խանջյանի առաջարկով ուրիշ նպատակների համար կառուցվող առաջին շքեղ շենքը հատկացրին քաղաքի պիոներներին, կոչեցին «Պիոներների պալատ»:

Պիոներների պալատում հավաքված հասակավոր մարդիկ,

# ՈՉ ՈՔ ՉԻ ԾԵՐԱՆՈՒՄ



իրենց շուրջը վազվզող երեխաների չափ էլ չկային, ․երբ երեսունյոթ թվականի գարնանը առաջին անգամ մուտք գործեցին առաջին մանկական պալատից ներս: Դա այն ժամանակվա Երևանի ամենաշքեղ շենքն էր և այնքան բարձր ու սլացիկ էին նրա կամարները, որ շշուկով էին խոսում ու չէին համարձակվում նստել փափուկ բազմոցների ու գորգապատ բազկաթոռների վրա: Այդ ժամանակ կարո՞ղ էին երևակայել, որ ընդամենը երեսուն տարի անց, այսօրվա պիոներներին այդ շենքը հին ու անհարմար կթվա ու նոր պալատ կսկսվի կառուցվել՝ ավելի շքեղ, ավելի մեծ ու հարմարավետ: Որովհետև հիսուն ամյակ ունեցող պատկոմական տունը դարձել է հինգ հազարանոց պիոներների պալատ, իսկ խմբակների թիվը երկու հարյուր վաթսունից անցել է: Բայց զարմանալին այն է, որ չի փոխվել երեխաների նախասիրությունը: Առաջվա պես նրանք ամենից շատ սիրում են պարել, երգել, նկարել Հայաստանի կապույտ երկինքը: Փոխվել է նրանց հետաքրքրությունների շրջանակը: Հիմա նույնիսկ դժվար է հասկանալ, թե ինչ են նրանք ուսումնասիրում՝ կարտինգիստների, ավտոմատիկա և տելեմեխանիկա խմբակներում, տասներկուսի հասնող «Խարույկ», «Բողբոջ», «Աստղիկ», «Գույնզգույն վզկապավորներ» և մյուս ակումբներում: Հիմա նրանք նամակագրական կապի մեջ են աշխարհի շատ երկրների երեխաների հետ, արվեստագետների, տիեզերագնացների ու աշխարհահռչակ մարզիկների հետ:

Հավաքվածները նստել են այն աթոռներին, որոնց վրա պարապել են տարիներ առաջ, ու բոլորն էլ լուռ են: Դժվար է հավատալ, որ այդքան շատ բան է փոխվել իրենցից հետո եկած սաների կյանքում: Դժվար է հավատալ, դրա համար էլ նրանք անխոս մտածում են այն երեխաների մասին, որոնք այս նույն դռնից մտնելու են տասը, քսան կամ երեսուն տարի անց:

— Եկեք նամակ գրեք նրանց,— հանկարծ առաջարկում է պիոներների պալատի դիրեկտոր ընկեր Սարգիս Մնացականյանը:

Բոլորը տարակուսանքով նայում են իրար: Ախր այդ երեխաները դեռ չեն էլ ծնվել: Բայց պիոները, քանի տարեկան էլ որ լինի, մնում է նույն երազող կարմիր վզկապավորը: Ներկաներից մեկը մի էջ սպիտակ թուղթ է վերցնում ու հատ-հատ գրում է.

«Բոլոր այն պիոներներին, որոնք մասնակցելու են Երևանի պիոներների պալատի հարյուրամյա տոնակատարությանը»:

Հետո մի պահ լռություն է տիրում և մտքերը իրար խանգարելով, սկսում են հորդել: Բոլորն ուզում են, որ թղթի վրա այն սերնդի խոհերը լինի, որը հիսուն տարի առաջ այս օրն էր երազում մեկ սենյականոց պատկոմական տանը: Բոլորն ուզում են, որ նամակի մեջ այն սերնդի ապրումները լինի, որը չվերադարձավ Հայրենական պատերազմից: Բոլորն ուզում են...

Ասենք, ինչո՞ւ իզուր պատմել նամակի բովանդակությունը: Հիսուն տարի անց դուք կբացեք այն և կիմանաք այն բոլոր երազները, մաղթանքներն ու հաղթանակները, որ ձեր հայրերը կամենում էին ձեզ...

ԳՐԻԳՈՐ ՋԱՆԻԿՅԱՆ



Գ. Տ. ԲԵՐԵԳՈՎՈՅ



Բ. Վ. ՎՈԼԻՆՈՎ




Ա. Ա. ԼԵՈՆՈՎ

# ՏԻԵԶԵՐԱԳՆԱՑՆԵՐԸ ՊԱՏՄՈՒՄ ԵՆ ԻՐԵՆՑ

**ՀԱՐՑ.— Երբ պիոներ էիք, անշուշտ չգիտեիք, որ տիեզերք եք թռչելու, այն ժամանակ նման թռիչքը ֆանտաստիկ կթվար: Եղե՞լ է ձեր մանկության ժամանակ այնպիսի բան, որն օգնել է ձեզ դառնալու տիեզերագնաց:**

### Պ. Ռ. ՊՈՊՈՎԻՉ

Մանկությունից սիրել եմ աշխատանքը: Ամառները արածացնում էի կով, սագեր, ծնողներիս հետ աշխատում էի բանջարանոցում: Ձմեռները բարեխղճորեն սովորում էի: Միշտ սովորել եմ «գերազանցներով»: Դժվար բան չէ այդ: Կարևորը սկզբից ևեթ հասկանալն է, որ հարկավոր է որքան կարելի է շատ գիտելիքներ ունենալ:

### Գ. Տ. ԲԵՐԵԳՈՎՈՅ

Այն օրից, որ հիշում եմ ինձ, տարված եմ եղել ավիամոդելիզմով: Փոքրիկ տղա էի, սարքում էի ամեն բան, ինչը թռչել կարող էր: Սարքում էի բազմապիսի օդապարուկներ՝ հասարակ, շրջանակով, կոր: Իսկ երբ մեծացա, ընդգրկվեցի խմբակի մեջ: Պատրաստում էինք պլաներների մոդելներ, ռետինե մոտորներով սավառնակներ:

### Բ. Վ. ՎՈԼԻՆՈՎ

Ոչնչով չէի տարբերվում իմ հասակակիցներից: Սիրում էի սպորտը: Մեզ մոտ՝ Սիբիրում բոլոր երեխաները դահուկ էին քշում:

Դպրոց սկսեցի հաճախել պատերազմի ժամանակ: Մեզ մոտ եկան շատ մարդիկ այն վայրերից, որոնք ֆաշիստները գրավել էին: Մայրս մեր տուն բերեց Լենինգրադից եկած մի ընտանիքի և ասաց. «Ապրեք մեզ հետ: Հիմա բոլորս դժբախտության մեջ ենք: Մենք պետք է միմյանց օգնենք»: Ես մանկուց հասկացա, թե որքան կարևոր է ընկերական օգնությունը, իրար հենարան ու անկեղծ կարեկից լինելը:

### Ա. Ա. ԼԵՈՆՈՎ

Երազում էի սավառնորդ դառնալ: Ե՞րբ և ինչպե՞ս ծագեց այդ միտքը: Մենք ապրում էինք Սիբիրի Կեմերովո քաղաքում: Մեր հարևանին հյուր եկավ մի զինվորական օդաչու: Բարձրահասակ ու ձիգ էր և շատ բարի: Եթե տեսնում էր մեկին վիրավորում են, անպայման մոտենում էր, վիրավորողին ամոթանք տալիս: Տղաները փուտբոլ էին խաղում՝ ցավակից էր դառնում: Այդ ժամանակ ես մտածեցի, որ բոլոր օդաչուները բարի, խելացի, գեղեցիկ ու քաջ մարդիկ են: Ուզեցի ինքս էլ լինել այդպիսին:

Իմ այդ երազանքը հաճախ էր կյանքում ինձ օգնում: Պատահել է, որ վատ եմ սովորել: Մայրս հիշեցրել է. «Քեզանից ի՞նչ օդաչու դուրս կգա, եթե դու խնդիրներ լուծել չես կարողանում»: Եվ իրոք, դժվար է այդպիսի բան պատկերացնել. գրատախտակի մոտ են կանչում այդ օդաչուին, իսկ նա ասում է. «Ես երեկ հոկեյ էի խաղում, դասերս չկարողացա սովորել» կամ «Դուք երեկ ինձ դաս եք հարցրել, մտածեցի, որ այսօր չեք հարցնի, դրա համար չսովորեցի»: Ո՛չ, չի կարող օդաչուն այսպիսի պատասխան տալ: Եվ ես սկսում էի դասերս սովորել այնպես, ինչպես կսազեր իմ հերոսին:

### Գ. Ս. ՇՈՆԻՆ

Ես նույնպես, իհարկե, փոքր եմ եղել: Պատերազմի տարիներին էր: Ֆաշիստները մտան Օդեսա: Հետո մեր զորքերը ազատագրեցին սովետական հողը, սովետական մարդկանց: Պատերա՜զմ, դժվար ժամանակնե՜ր: Այդպիսի փորձությունների մեջ մարդիկ շուտ են հասունանում: Ես ութ տարեկան էի, բայց ինձ փոքր չէի զգում: Չեմ հիշում, որ մի օր նվնվայի, կամակորություններ անեի, լալով որևէ բան խնդրեի: Տան ամենամեծ տղամարդն էի: Հնգամյա Օլեգը կամ երեքամյա Ժաննան ումի՞ց պետք է օրինակ վերցնեին, եթե նրանց մեծ եղբայրը կամակոր լիներ:

Այն ժամանակ ես չգիտեի, թե ինչպես է կոչվում այդ զգացումը, իսկ հիմա գիտեմ. դա պատասխանատվության զգացումն է, դու պատասխանատու ես քեզանից թույլերի և փոքրերի համար:



Պ. Ռ. ՊՈՊՈՎԻՉ



Գ. Ս. ՇՈՆԻՆ

# ՊԻՈՆԵՐԱԿԱՆ ՏԱՐԻՆԵՐԻ ՄԱՍԻՆ

**ՀԱՐՑ.— Տիեզերագնացները մեծ համարձակության տեր մարդիկ են։ Արդյո՞ք մանուկ ժամանակ դուք ոչ մի բանից չէիք վախենում, ասենք, օրինակ՝ մթնից։**

### Գ. Տ. ԲԵՐԵԳՈՎՈՅ

Հիմա կարող եմ խոստովանել. վախենում էի։ Ութ տարեկան էի։ Ապրում էինք գյուղում և շատ էինք սիրում ամառներն ավագ եղբորս՝ Միշայի հետ գնալ պուրակ՝ ճոճանակով ճոճվել։ Ծնողներս թույլ չէին տալիս երեկոները բացակայել, գնում էինք գաղտնի, դուրս էինք թռչում լուսամուտից։ Վերադառնում էինք, երբ փողոցում արդեն մութ էր լինում։ Երկուսով քայլելը լավ է, ուրախ։ Բայց գողեգող մոտենում էինք լուսամուտին, պետք էր հիմա ներս մտնել։ Այո՛, այստեղ վրա էր տալիս վախը։ Լուսամուտը գետնից բարձր էր։ Եղբայրս ինձ օգնում էր, բարձրանում էի, դե հիմա մենակ ցատկիր մութ սենյակը։ Իսկ եթե նախ նա էր ներս ցատկում, ես մնում էի փողոցում մենակ։

Միշան միշտ հարցնում էր.

— Ժորա՛, չե՞ս վախենում։

Ես պատասխանում էի.

— Ի՞նչ ես ասում, իհարկե չեմ վախենում։

Բայց վախենում էի, այն էլ ինչպե՜ս։ Միշտ էի անում, որ վախս չէի խոստովանում։ Երբ արդեն մեծ էի, մի գիտնական ինձ բացատրեց.

— Եթե մարդը խոստովանում է, որ վախենում է, ազատություն է տալիս վախին, այդպիսի խոստովանությունից նա թուլանում է։ Իսկ հարկավոր է, որ ինքդ քեզ համոզես, ասելով. «Ես չեմ վախենում, կարող եմ մթնով անտառ գնալ, կարող եմ մենակ գերեզմանատուն մտնել, կարող եմ դոդոշը ձեռքս առնել», և իսկույն գնալ ու անել, և հաղթել վախին։

### Ա. Ա. ԼԵՈՆՈՎ

Մի անգամ ավագ եղբայրս պատրաստվում էր որսի գնալ։ Շատ էի ուզում հետը գնալ, բայց նա ասաց.

— Լյո՛նյա, քեզ չեմ տանի, հեռու եմ գնալու, կհոգնես։

Եվ նա ընկերների հետ գնաց։ Ես մի քիչ սպասեցի ու ետևից գնացի։ Գնում էի անտառային արահետով։ Մեն-մենակ։ Չորս կողմ լռություն էր։ Իհարկե, եթե սկսեի մտածել. «Ի՞նչ կա այն ծառի ետևը, գուցե մի կախարդ... Վա՜յ, վա՜յ, ձորա՛կ, նրա մեջ գուցե սարսափելի մի բան է թաքնըված», այդ ժամանակ, հավանաբար, ես կվախենայի։ Իսկ իմ նպատակն էր հասնել եղբորս։

Ավելի փոքր էի, երբ մի անգամ գիշերը անտառ գնացի, տեսնելու մի բույն։ Դեռևս ցերեկն էի նկատել այդ բույնն անտառեզրին։ Բնում կային չալպուտուրիկ ձվեր, իսկ թռչուն չկար։ Մորս հարցրի.

— Իսկ թռչունը որտե՞ղ է գիշերում։

— Իր տանը՝ իր բնում,— ասաց մայրս։

Ես էլ որոշեցի ստուգել։ Գնացի։ Լուսինը պարզ լուսավորում էր։ Թփերի ստվերները խաղացել էին։ Նրանց մեջ ով ասես կարող էր թաքնվել։ Բայց ես գնում էի միայն մի բանի մասին մտածելով. «Որտե՞ղ է այն բույնը»։ Գտա։ Կամաց մոտեցա։ Թըռչունը քնած էր բնի մեջ։ Վերադառնալիս, ճիշտ է, առանց ետ նայելու վազեցի։

**ՀԱՐՑ.— Շատ երեխաների համար ամենաձանձրալի և չսիրած գործ է տուն հավաքելը։ Ապագա տիեզերագնացներդ ինչպե՞ս էիք վերաբերվում սրան։**

### Պ. Ռ. ՊՈՊՈՎԻՉ

Օգնում էի մորս սեղանը հավաքել, ափսեները լվանալ։ Իմ մշտական պարտականությունն էր սարայը միանգամայն կարգին վիճակում պահել։ Հայրս և մայրս ստիպված չէին լինում հիշեցնելու. «Պաշա՛, սարայը կարգի բեր»։ Սարայը միշտ մաքուր էր։ Անշուշտ, պահում էի փոքր եղբորս՝ Պյոտրին։ Մի անգամ մայրս նույնիսկ ասաց, ցույց տալով Պյոտրին. «Սա մեծացել է Պաշայի ձեռքերի վրա»։

### Գ. Տ. ԲԵՐԵԳՈՎՈՅ

Իմ և եղբորս պարտականությունն էր հոգալ տան վառելիքի մասին։ Ես ու նա սղոցում և կոտրում էինք օրվա վառելիքի փայտը, հացի էինք գնում։

### Բ. Վ. ՎՈԼԻՆՈՎ

Ես մեծացա պատերազմի ժամանակ։ Մայրս աշխատում էր հոսպիտալում, առավոտյա վեցին գնում էր տանից, գալիս էր ուշ գիշերը։ Գնալուց առաջ արթնացնում էր ինձ. «Բո՛րյա, արթնացի՛ր, մանկապարտեզից ուշանում եք»։

Ես վեր էի կենում, արթնացնում և կերակրում փոքր եղբորս՝ Ռոբերտին: Տանում էի նրան մանկապարտեզ, հետո վազում էի դպրոց: Երեկոյան վերցնում էի եղբորս, բերում տուն:

Ամբողջովին ինձ վրա էր նաև խանութ գնալը: Մայրս վաղ առավոտից մինչև գիշեր աշխատանքի մեջ էր, ես պետք է հերթ կանգնեի, քարտերով մթերքներ ստանայի: Այն ժամանակ դա կոչվում էր «մթերավորվել»: Առիթ լինելիս, պարծանքով ասում էի մորս.

— Այ, ես այսպես լավ մթերավորվեցի:

Իսկ նա ժպտում էր.

— Ապրե՛ս, Բո՛րյա, դու իմ լավ օգնականն ես:

**Ա. Ա. ԼԵՈՆՈՎ**

Ինը-տասը տարեկան հասակից սկսած՝ ամենքեր լվանալը ու ամենօրյա տուն հավաքելը ինձ վրա էր: Իսկ երբ փոքրիկ Բորյան ծնվեց, եղածին ավելացավ նաև եղբորս նայելը. հետը խաղում էի, նրա փալասները փոխում, որ չորանան:

Վեցերորդ դասարանից ես արդեն եղբորս հետ գնում էի կայարան՝ վագոններ բեռնաթափելու: Մինչև օրս հիշում եմ, թե ինչպես ուրախացա, երբ տուն բերի իմ առաջին վաստակած փողը:

**Գ. Ս. ՇՈՆԻՆ**

Մայրս աշխատանքի էր գնում, տանը մնում էինք ծեր տատիկս ու մենք՝ երեք եղբայրներով: Ես մեծն էի: Բանջարանոցի ամենածանր աշխատանքն ինձ վրա էր: Ուրիշ կերպ չէր էլ կարող լինել:

**ՀԱՐՑ.— Պատմեցեք ձեր պիոներական ջոկատի ամենահիշարժան գործի, ամենահիշարժան օրվա մասին...**

**Բ. Վ. ՎՈԼԻՆՈՎ**

Ամառը ճամբարում էի: Մի օր մի մեծ խարույկ արինք: Գետափին գտել էինք մի չոր եղևնի, վրան ցախ դարսեցինք, խարույկ պատրաստեցինք: Խարույկ վառելը պետք է վստահվեր այն պիոներներին, որոնք ինչ-որ բանով աչքի էին ընկել:

Ամբողջ ճամբարը հանդիսավոր տողանի կանգնեց: Հիմա ջոկատի խորհրդի նախագահը ասելու էր նրանց անունները, որոնց պատիվ էր վիճակվել վառել խարույկը: Նա բարձրաձայն տալիս էր անունները. մեկ էլ լսում եմ. «Բորիս Վոլինով՝ հաղթող ֆուտբոլային թիմի ավագ». ի՜նչ ուրախություն էր: Մենք՝ հինգս, որոնց անունները ասվել էր, դուրս եկանք շարքից, ջահերն առանք ու մոտեցրինք խարույկին. «Մեկ, երկու, երեք, վառվի՛ր, խարո՛ւյկ, վառվի՛ր...»— Հազիվ էինք չոր ճյուղերին մոտեցրել, կրակի լեզվակները վերև բարձրացան:

Անմոռանալի, անննման պատկեր էր:

**Պ. Ռ. ՊՈՊՈՎԻՉ**

1944 թ. ձմռանն էր: Մի քանի օր շարունակ արևելքից լսվում էին հրետանակոծության ձայներ: Այնտեղ մարտեր էին մղվում: Մեր զորքերը հարձակվում էին: Մեր տանն ապրող ֆաշիստները մի գիշեր շտապ կապկպեցին իրենց իրերը, նետեցին մեքենաների մեջ և մեկնեցին: Ես կիսամաշտակս հագա, վազեցի գավիթ: Անսովոր լռություն էր: Հանկարծ հեռվից լսվեց դոփյուն: Հեծյալ էր անցնում գյուղով: Ո՞վ էր նա: Վախենում էի հարցնել. կարող էր գերմանացի լինել, բայց ուզում էի իմանալ, գուցե մերոնցից էր:

Ձայն տվի. «Քեռի՛, դու ումոնցի՞ց ես»: Նա ձին կանգնեցրեց. «Ես մերոնցից եմ, իսկ դու ումոնցի՞ց ես»,— պատասխանեց նա ռուսերեն: Ես վազեցի խրճիթ ու աղաղակեցի. «Մամա՛, մերոնք եկան, ազատությու՛ն...»

**Գ. Տ. ԲԵՐԵԳՈՎՈՅ**

Իմ հիշողությունը կապված է ավիացիայի հետ:

Ութ տարեկան էի, երբ մեզ մոտ՝ Ենակիևո եկավ մի ինքնաթիռ, որպեսզի հարվածայիններին զբոսանքի տանի: Ինքնաթիռը նստեց դաշտում, ամբոխը շրջապատեց նրան: Ես կարողացա մոտենալ պոչին ու ձեռք տալ: Օդաչուն մատով սպառնաց ինձ: Բայց միևնույն էր, ես երջանիկ էի: Երեկոյան մեր փողոցի տղաները հարցնում էին ինձ. «Ճի՞շտ է, որ դու ձեռք ես տվել իսկական ինքնաթիռի»: «Ճիշտ է»,— պատասխանում եմ: Նրանք շարունակում են. «Որ այդպես է, պատմիր, թե ինչպիսին է նա»: Ես շփոթվում եմ. «Ինչպե՞ս թե ինչպիսին է. շատ հասարակ, ա՛յ այսպիսի կտորից է»: Ինքնաթիռի շատ մասեր երեսպատված էին պիրկալով (բատիստանման նուրբ կտորով):

**Ա. Ա. ԼԵՈՆՈՎ**

Ես կոմերիտականն էի և կոմերիտմիության շրջկոմը ինձ ուղարկեց պիոներական ճամբար՝ իբրև ջոկատավար: Ճամբարը գտնվում էր Բալթիկ ծովի ափին, և մենք հաճախ էինք երեխաների հետ ծովափով արշավի գնում: Այդ արշավներից մեկի ժամանակ մի ձկնկուլ բռնեցինք: Ճամբար վերադարձանք թե չէ՝ հանձնաժողովով եկավ մեզ մոտ: Հանձնաժողովի անդամներին ես սկսեցի ցույց տալ ճամբարը:

— Ա՛յ, սա մեր ճաշարանն է, ա՛յ, սրանք մեր վրաններն են, սա մեր մարզադաշտն է:

Մոտեցանք մեկուսարանին, ես հրեցի դուռը.

— Սա էլ մեր օրինակելի մեկուսարանն է...

— Դուք համոզվա՞ծ եք, որ օրինակելի է,— հարցրեց հանձնաժողովի նախագահը:

Ես նայեցի ու քարացա. մեկուսարանը տակնուվրա էր արված, ամեն տեղ ձուկ էր թափած, իսկ սեղանի վրա նստած էր ձկնկուլը: Դու մի ասի արշավից վերադառնալուց հետո երեխաները նրան թաքցրել են դատարկ մեկուսարանում:

ՀԱՐՑ.— Անկարելի է մանկություն պատկերացնել առանց կենդանիների: Պատմե՛ք կենդանիների հետ կապված հիշարժան պատմություն:

### Պ. Ռ. ՊՈՊՈՎԻՉ

Առհասարակ սիրում եմ կենդանիներին, հատկապես շներին: Պատերազմից առաջ մենք ունեինք մի մեծ, շատ խելացի շուն, անունը Պոլկան: Մի անգամ վաղ առավոտյան լսում եմ նրա վնգստոցը: Ի՞նչ է պատահել: Փողոց եմ վազում, և ի՞նչ. մեր մեծ, ուժեղ շունը պառկած է պարտեզի դռնակի մոտ, փորձում է բարձրանալ, չի կարողանում, ետևի թաթերը կոտրված են: Որտեղի՞ց՝ ուժ եկավ վրաս, չգիտեմ: Ես նրան ձեռքերիս վրա առած քարշ տվի բակ, վերքերը լվացի, տախտակով վիրակապեցի թաթերը, որ ուղիղ կպչեն: Երկար խնամեցի նրան, ու առողջացավ: Նա չմոռացավ այդ, ուր գնում էի՝ գալիս էր հետս, պահպանում ինձ:

### Գ. Ս. ՇՈՆԻՆ

Ես ու եղբայրս մի ձեռնածու ճագար ունեինք: Նրան կոչում էինք Կրոլ: Սև՜, սև էր և շատ ծիծաղելի: Ճագարը բռնում էր առջևի թաթերով և կրծում արագ-արագ: Քիթը կնճռոտ էր, ականջները խլշում էր, որ լսի, թե մարդ չի՞ գալիս: Մեզանից բոլորովին չէր վախենում, մենք էլ սիրում էինք նրան: Մի անգամ դպրոցից եկանք, մոտեցանք վանդակին, տեսանք վանդակը դատարկ է: Նախորդ օրը երևի մոռացել էինք փակել դռնակը, և ճագարը փախել էր: Փնտրեցինք ամենուր, խուզարկեցինք գազարի մարգերը, ճագարը չկար ու չկար: Երրորդ օրը միայն գտանք նրան: Մեկ՝ ես, մեկ եղբայրս հերթով գրկում, փաղաքշելով բերում էինք նրան ու ասում. «Դու այդ ո՞ւր էիր փախել, Կրո՛լ, ա՞յ թե ճանապարհորդ ես»: Իսկ նա նստել էր հանգիստ ու գոհ: Ուրախ էր, որ տուն է գնում:

### Ա. Ա. ԼԵՈՆՈՎ

Մեր մայրը ինը երեխա ուներ: Այդ պատճառով մենք թեև քաղաքում էինք ապրում, բայց միշտ կով էինք պահում:

Ես ութ տարեկան էի, երբ մեր կովը հորթ ծնեց: Այնպիսի փոքրիկ, թույլ հորթ էր, որ մայրս ասաց.

— Ի՞նչ անենք մենք սրան: Սա չի ապրի, ոտի վրա կանգնել չի կարողանում:

Ես խնդրեցի, համոզեցի մորս, ասացի, որ ինձ տա հորթը, ես խնամեմ, առողջացնեմ: Մայրս տվեց: Ես ծծուկով կերակրում էի նրան, փաղաքշում, փայփայում, սովորեցրի կանգնել, ման գալ: Շուտով նա ամրապնդվեց, սկսեց վազել, վազվզել, կատակով հարու տալ: Ճանաչում էր իմ ձայնը: Ուր գնում էի՝ ետևիցս գալիս էր: Երեխաներով անտառ էինք գնում՝ նա էլ էր գալիս, գետակ էինք գնում լողանալու, նա էլ էր ջուրը մտնում: Երբ մեծացավ, դարձավ մեծ կով, դարձյալ սիրում էր հետներս խաղալ, կատակով հարու տալ:

ՀԱՐՑ.— Երեխաներին միշտ չէ, որ հաջողվում է ընկերություն անել: Պատմե՛ք ձեր ընկերների մասին, ասե՛ք, ինչպե՞ս ընկերություն անել:

### Գ. Ս. ՇՈՆԻՆ

Ես միշտ էլ շատ ընկերներ եմ ունեցել: Ստյոպա Յուրովի հետ մանկության ընկերներ ենք: Հիմա նրան, իհարկե, Ստյոպա չեն կոչում, այլ Ստեփան Իվանովիչ:

Ես դասարանի ամենափոքրն էի: Իսկ Ստյոպան խոշոր էր և ուժեղ: Նա ոչ ոքի թույլ չէր տալիս, որ ինձ նեղացնի: Բայց և երբեք ինձ չէր հրամայում: Մենք միասին սովորեցինք, միասին պատրաստվում էինք արհեստագործական դպրոց ընդունվել, երկուսս էլ ուզում էինք ծովային դառնալ:

Ամեն անգամ, երբ Օդեսա եմ գնում՝ ծնողներիս այցելելու, անպայման հանդիպում եմ Ստյոպայիn: Օդեսայի մերձակայքում աշխատում է իբրև ակնաբույժ:

### Գ. Տ. ԲԵՐԵԳՈՎՈՅ

Իմ կարծիքով լավ է ընկերությունն այն դեպքում միայն, երբ անողոք է, երբ ընկերն ընկերոջն ասում է. «Այս հարցում դու իրավացի չես», «Այստեղ դու սխալվեցիր»: Ո՞վ պետք է քեզ օգնի լավը լինել, եթե ոչ ընկերդ:

### Բ. Վ. ՎՈԼԻՆՈՎ

Գլխավորը՝ ընկերոջն հավատալն է: Եվ ապա. երբեք հապճեպ եզրակացություն չանելը: Չշտապել վիրավորական բաներ ասել: Վիրավորանքը երկար ժամանակ չի մոռացվում: Դա պատճառ է դառնում, որ լավ ընկերները հեռանան իրարից:

Մարդը պետք է ամեն բանում համեստ լինի, մանավանդ ընկերության մեջ: Եթե դու օգնության ես հասել ընկերոջդ, մի՛ շտապի այդ մասին ազդարարել ամենքին, ցույց տալ, թե տեսեք ես ի՜նչ լավն եմ, ի՜նչ բարի եմ:

Իմ կարծիքով ընկերության իդեալ էր այն փոխհարաբերությունը, որ կար Սերգեյ Պավլովիչ Կորոլյովի և Յուրի Ալեքսեևիչ Գագարինի միջև: Տիեզերանավերի գլխավոր կոնստրուկտորը տարիքով էր տիեզերագնաց-օդաչուից: Բայց ընդհանուր գործի մեջ նրանք ցուցաբերում էին միևնույն հավատը, մշտապես օգնում էր մեկը մյուսին: Միայն բարեկամին կարող էր վստահել Կորոլյովը իր մտքի զավակին՝ տիեզերանավին:

### Ա. Ա. ԼԵՈՆՈՎ

Շնորհակալ եմ բախտից իմ այնպիսի ընկերների համար, որպիսիք Յուրի Գագարինն էր, իմ հրամանատար Պավել Բելյաևը, իմ ուսուցիչ Վոլոդյա



Կոմարովը։ Նրանք նման չէին իրար, Յուրին՝ ուրախ էր, պարզ, Պաշան՝ ինքնամփոփ, Վոլոդյան՝ ամաչկոտ, լռակյաց։ Բայց բոլորը մեծապես նպատակասլաց, կամքի, զսպվածության տեր մարդիկ էին։ Նրանց պակասը բոլորս զգում ենք։ Ծանր է բարեկամ կորցնելը։

**Գ. Ս. ՇՈՆԻՆ**

Գեորգի Տիմոֆեևիչ Բերեգովոյը պատերազմի ժամանակ գրոհող-օդաչու էր։ Նրա «Գրոհի անկյուն» գրքում նկարագրված է մի այսպիսի դեպք. ֆաշիստները խփում են ինքնաթիռը, ողդիստը բեկորներից վիրավորվում է, օդաչուն ինքնաթիռը վայրէջքի է տանում ևահա հրդեհ է բռնկվում, ուր որ է բենզինի բաքը պետք է պայթի։ Հարկավոր էր պարաշյուտներով ցած ցատկել։ Սակայն ողդիստի պարաշյուտը վառվում է, նա բղավում է. «Ժորա՛, դու թռիր մենակ, այլապես երկուսս էլ կկործնենք»։ Բայց Բերեգովոյը ընկերոջը չի լքում։ Նա ինքնաթիռը իջեցնում է, հանում ընկերոջը այրվող ինքնաթիռից։ Այ, սա տղամարդ մարդու ընկերության օրինակ է։

**ՀԱՐՑ.— Հոկտեմբերիկները շատ են սիրում տիեզերագնացներին։ Նրանք հպարտանում են ձեզանով, նրանք ուզում են լինել ձեզ նման։ Խնդրում ենք ասեք՝ ի՞նչ խորհուրդներ եք տալիս նրանց։**

**Գ. Տ. ԲԵՐԵԳՈՎՈՅ**

Սիրել սովետական հայրենիքը։ Ամեն ինչ անել հանուն նրա։ Փառք բերել նրան, ինչպես որ փառք բերեց Յու. Ա. Գագարինը։

**Բ. Վ. ՎՈԼԻՆՈՎ**

Չմոռանալ նրանց, ովքեր կյանքները տվին հայրենիքին, մեզ։ Հիշել հեղափոխության, քաղաքացիական կռիվների, Հայրենականի մեծ պատերազմի մարտիկներին։ Հարգել տիեզերքի զոհված հերոսների հիշատակը։ Նրանք դեռ չարված գործերի առաջին անողները եղան, պիոներները՝ Գագարինը, Բելյաևը, Կոմարովը, Դոբրովոլսկին, Պացաևը, Վոլկովը։

**Պ. Ռ. ՊՈՊՈՎԻՉ**

Ցանկանում եմ, որ երեխաները վերաբերվեն իրենց ծնողներին այնպիսի սիրով, ուշադրությամբ, ինչպես վերաբերվում է իր մոր Վալենտինա Վլադիմիրովնա Նիկոլաևա-Տերեշկովան։ Տիեզերական թռիչքի ժամանակ, գիտենալով, որ իր մայրը շատ կանհանգստանա, նա ռադիոյով շարունակ կրկնում էր. «Հաղորդեք մորս։ Հաղորդեք մորս։ Ամեն ինչ լավ է։ Ես ինձ լավ եմ զգում, հաղորդեք մորս...»

Թող երեխաները հարգեն մեկը մյուսին։ Դու ինչպես վերաբերվես մարդկանց, այնպես էլ մարդիկ կվերաբերվեն քեզ. իզուր չի ասված՝ «Ուրիշների մեջ հարգիր քեզ»։

**Ա. Ա. ԼԵՈՆՈՎ**

Լավ կատարել դպրոցականի ամենաառաջին խնդիրը՝ սովորել։ Մանկուց լինել ինքնուրույն։ Ունենալ սեփական կարծիքը և հաստատ մնալ նրան։

**Գ. Ս. ՇՈՆԻՆ**

Մաղթում եմ նրանց երջանկություն, իսկ երջանկությունը ձեռք է բերվում աշխատանքով, իմացությամբ, ընդհանուր ջանքերով։

Գորիսի № 1 ութամյա դպրոցի պիոներները որոշեցին ուսումնասիրել իրենց դպրոցի պատմությունը։ Դրա համար նրանք նախ առանձնացրին գեբազանցիկ շրջանավարտների անունները և սկսեցին նրանց մասին տեղեկություններ հավաքել։

Թղթապանակները լցվում էին անհրաժեշտ նյութերով, նամակներով, լուսանկարներով և այլ տվյալներով։ Միայն Էդիկ Միրաքյանին վերաբերող նամակներն էին համառությամբ անպատասխան մնում կամ ետ վերադառնում։

Եվ ահա վերջապես եկավ առաջին պատասխանը Վարդանուշ Միրաքյանից։ Պիոներների նամակից հուզված, նա գրել էր որդու մասին շատ անհրաժեշտ մանրամասներ։ Էդիկը, գերազանցիկ աշակերտ լինելուց բացի, երաժիշտ էր, երգիչ, մարզիկ...

Կոմպոզիտոր Աշոտ Սաթյանը դպրոցական Էդիկի մասին ասում էր. «Այս տղան բնածին մեծ ընդունակությունների տեր է»։ Սաթյանի բացակայության ժամանակ Էդիկն էր ղեկավարում դպրոցի փողային նվագախումբը։

Էդիկը հանրապետական մրցությունում «Աղբյուր-աղբյուր» երգի համար առաջին տեղն է գրավել։ Մարզանքով զբաղվելը նրա տարերքն էր։ Երևանից Գորիս կազմակերպված հեծանվավազքի հանրապետական մրցույթում հաղթողի դափնին նորից Էդիկն է նվաճել։

Մինչև մարտիկ դառնալը նա պոլիտեխնիկական ինստիտուտի ճարտարապետական ֆակուլտետի ավարտական կուրսի ուսանող էր։ Սիրում էր իր մասնագիտությունը և ճարտարապետական մտահղացումները իրականացնելու շեմին էր, երբ զենքի կոչվեց։ Երազները ծարավել են կիսատ մնացած դիպլոմային աշ-

**ՈՉԻՆՉ ՉԻ ՄՈՌԱՑՎՈՒՄ, ՈՉՈՔ ՉԻ ՄՈՌԱՑՎՈՒՄ**

խատանքում, դասագրքերում ու գծագրերում: Իսկ ինքը մեկնել է Թբիլիսիի ռազմական ուսումնարանը: Այնուհետև լեյտենանտի ուսադիրներով ու հրետանավորի տարբերանշաններով մեկնել է ռազմաճակատ:

Նամակների ընթերցումը ավարտելով, պատանիները որոշեցին իրենց ջոկատը կոչել Էդիկ Միրաքյանի անունով: Մի քանի օր անց, հանդիպում կազմակերպեցին: Այդ օրը շա՜տ հետաքրքրաշարժ դեպքեր, պատառիկներ իմացան իրենց հերոսի կյանքից և այդ հավաքն էլ նոր մտահղացում ծնեց. «Գնալ հերոսի մարտական հետքերով և այցելել շիրմին»:

*Տեղական կազմակերպությունները ընդառաջեցին պատանի լենինյանների ցանկությանը, և նրանք ավագ ջոկատավար Լորա Խուրշուդյանի, պատմության ուսուցչուհի Եղենա Պետրոսյանի և Էդիկի հարազատների հետ մեկնեցին Կրասնոդարի մարզի Տուապսեի շրջանի Շահումյան ավանը:

Տեղացիները պատմեցին կապուտաչ, թիկնեղ հայորդու մասին: Շահումյան լեռնանցքում հուշասյան վրա գրված է հրետանային այն մարտկոցի նշանաբանը, որի հրամանատարն էր Էդիկը. «Ոչ ոք այս լեռնանցքը չի մտնի...» Այստեղ նրա մարտկոցը պաշտպանել է ռազմաստրատեգիական կարևոր նշանակություն ունեցող նավահանգիստը և թույլ չի տվել, որ թըշնամին ափ հանի ծովային դեսանտ: Ցամաքից հարձակվող թշնամու տանկային 2 դիվիզիաները, ռումինական լեռնահետևակային և լեռնահրաձգային դիվիզիաները, զինված վեցփողանի ականանետերով, չեն կարողացել ընկճել սովետական մի խումբ հրետանավորների դիմադրությունը:

Կրած կորուստներից գազազած, ֆաշիստական հրամանատարները այդ ուժերը փոխադրել են գեներալ Ցեպլյաևի բրիգադի վրա: Շտաբի ուղարկած ուժերը չեն բավարարել: Էդիկի մարտկոցն է օգնության հասել և, նոր կորուստներ պատճառելով թշնամուն, ստիպել նահանջել:

Գեներալը բանակի շտաբն է ուղարկել զեկուցագիր. «Միրաքյանի նախաձեռնությունն ու խիզախությունը անզուգական էին: Նա իր մարտկոցով փրկեց իմ զորամասը՝ անխուսափելի պարտությունը փոխարինելով հաղթանակի: Նա արժանի է կառավարական բարձր պարգևի...»

Սակայն խիզախ հրետանավորը չապրեց մինչև այդ օրը: 1942 թվականի աշնանային մի ցուրտ օր թշնամու անհավասար ուժերի հետ կատաղի ու օրհասական կռվի մեջ մտավ:

Ջոր մտած ֆաշիստական տասնյակ տանկեր այրվեցին մարտկոցի արկերի տարափից: Վառվեցին մեկը մյուսի ետևից: Թշնամին չհասավ իր նպատակին, իսկ մարտկոցում ողջ մնացին մի քանի մահամերձ վիրավորներ:

Ջոկատի անդամներ Լենան, Վարդանը, Սիրվարդը, Սարիկն

# ԴՐՈՒԺԻՆՆԵՐՈՒՄ



# ԵՎ ՋՈԿԱՏՆԵՐՈՒՄ

ու մյուսները քայլեցին իրենց հերոսի մարտական գործողությունների վայրերով, թարմ ծաղկեփնջեր դրեցին հուշասյան ու եղբայրական գերեզմանի վրա, զրուցեցին Էդիկ Միրաքյանի անունը կրող փողոցի տարեց բնակիչների հետ, ու գրառումներ կատարեցին իրենց ծոցատետրերում: Խիզախ հրամանատարի անունը կրող ջոկատի անդամները վերադարձին իրենց հետ բերին Էդիկի տափաշիշը և այլ իրեր, որոնք դպրոցականներին նվիրեց ավանի ժողթանգարանը:

Ձեռք բերած նյութերով դըպրոցում թանգարան են բացել, ուր քաջարի հրետանավորի կյանքը լուսաբանող բազմաթիվ ցուցանմուշներ կան:

*ՎԱՀԱՆ ՄԵԽԱԿՅԱՆ*





*Մեր երկրի անհետացած կենդանիները*

# Գ Ե Տ Ա Ձ Ի

ՎԱԽԹԱՆԳ ԱՆԱՆՅԱՆ

— Գետաձին հո Աֆրիկայում է լինում, Հայաստանի նման ցուրտ երկրում գետաձին կապրի՞,— կհարցնեք դուք:

Զարմանալու իրավունք ունեք: Բայց Հայաստանը հո միշտ այսպես լեռնային ու ցուրտ չի եղել: Կար ժամանակ, երբ մեզ մոտ այնքան տաք էր, որ երկիրը պատած էր արևադարձային բուսականությամբ: Այն ժամանակ մեր երկիրը ձմեռ չուներ: Անդրկովկասը, որ մի ժամանակ ծովի տակ էր, վեր էր բարձրացել ծովի հատակից և ծածկվել փարթամ բուսականությամբ:

Իսկ կենդանիներ չկային. նրանք եկան հարևան երկրներից: Հյուսիսից գալ չէին կարող, որովհետև Սև ծովը ներկայիս Հյուսիսային Կովկասի հարթություններով տարածված-միացած էր Կասպից ծովին: Իսկ հարավից և փոքր Ասիայի կողմից ճամփան բաց էր: Ահա այդ կողմերից էլ Անդրկովկաս են ներխուժում աֆրիկական և հարավ-ասիական կենդանիները՝ վիթխարի մաստադոնտներ, ընձուղտներ, կապիկներ, ջայլամներ, փղեր, ռնգեղջյուրներ... Դրանցից շատերի մնացորդները գտնվել են անցյալ դարում Լենինականի բերդը կառուցելիս, ինչպես նաև մեր երկրի ուրիշ վայրերում:

Տաք երկրների կենդանիների ներխուժումը տեղի է ունեցել երրորդական շրջանում: Երկրի կյանքի այդ շրջանը նախորդել է ներկայիս՝ չորրորդական շրջանին և տևել է մոտ 70 միլիոն տարի:

Այդ դարաշրջանում էր ահա, որ մեր երկիր մուտք գործեց և այնտեղ հիմնավորվեց գետաձին, որի նկարը դուք տեսնում եք այստեղ:

Բայց ինչպե՞ս հաստատենք, որ պատմական Հայաստանում իրոք գետաձի եղել է: Պեղածո ոսկորներով. երկրաբան Ա. Վեկուան 1958 թվականին Ջավախքում գետաձիու ոսկորներ է գտել:

# ԵՐԿՆԱՅԻՆ ԼՈՒՍԱՏՈՒՆԵՐԻ ԵՎ ԿԵՆԴԱՆԻ ՕՐԳԱՆԻԶՄՆԵՐԻ ԿԱՊԸ

ԼԵՎՈՆ ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ

Արևածաղկի տարօրինակ վարքը վաղուց է գրավել մարդկանց ուշադրությունը: Իրոք, զարմանալի համառությամբ այդ բարձրահասակ միամյա բույսի խոշոր ծաղկազամբյուղները վաղ առավոտից մինչև մայրամուտ հետևվում են արեգակի ընթացքին, ոչ մի պահ «հայացքը» չկտրելով երկնային լուսատուից:

Արևածաղկի օրինակը եզակի չէ: Կան բազմաթիվ բույսեր, որոնք ոչ միայն ծաղիկը, այլև տերևներն են համարեցնում արեգակի դիրքին, երկնակամարում նրա շարժմանը համընթաց: Գիտնականները այս հետաքրքիր երևույթը անվանել են հելիոտրոպիզմ, որը թարգմանաբար նշանակում է՝ ձգտում դեպի արևը:

«Պիոների» այս տարվա վեցերորդ համարում դուք արդեն կարդացել եք և գիտեք ծաղկային ժամացույցի մասին: Դուք արդեն գիտեք, որ որոշ բույսերի ծաղիկներ բացվում և փակվում են որոշակի ժամերի, այնպես որ հետևելով դրանց ծաղկմանը, նույնիսկ կարելի է որոշել օրվա ժամանակը:

Չխոսելով արդեն այն մասին, որ մեր մոլորակի վրա կյանքը ամբողջովին կախված է արեգակից, պետք է ենթադրել, որ կապ գոյություն ունի երկնային մարմինների շարժման և Երկրի վրա գոյություն ունեցող կենդանի օրգանիզմների միջև: Այդ օրգանիզմներից շատերը խիստ զգայուն են ոչ միայն լույսի և ջերմության նկատմամբ, այլև նկատելի կերպով արձագանքում են Արեգակի, Լուսնի և մեր մոլորակի շարժումներին: Բույսերը և կենդանիները ամբողջովին և առանց բացառության հարմարված են օրվա տևողությանը և տարվա եղանակներին, որոնք իրենց հերթին պայմանավորված են Երկրի պտույտով: Միայն օվկիանոսների խորքերում և խոր քարանձավներում ապրող էակները համեմատաբար անկախ են, չնայած նրանք ևս որոշակիորեն ենթարկվում են երկնային լուսատուների ազդեցությանը:

Օրվա մեջ երկու անգամ, լուսա-

բացին և մայրամուտին, բնության թատերաբեմում կատարվում է «գործող անձանց» համարյա լրիվ հերթափոխություն: Առավոտյան իրենց պատսպարաններն են քաշվում գիշերային կենդանիները, ասպարեզը զիջելով ցերեկայիններին, որպեսզի երեկոյան կրկին նրանցից ընդունեն անընդհատ շարժման ու փոփոխման, գոյության կռվի, պայքարի հերթափոխը:

Կենդանիների այս վարվելակերպը պայմանավորված է նրանց զարգացման պատմական ընթացքով: Չնայած դրան, որոշ կենդանիներ անհրաժեշտության դեպքում կարող են փոխել իրենց ապրելակերպը: Այսպես օրինակ, մի շարք անտառային և լողացող թռչուններ, որոնք սովորաբար ակտիվ են ցերեկը, չվերթը կատարում են գիշերը: Բնագետները վաղուց արդեն նկատել են, որ այն շրջաններում, որտեղ շատ են որսորդները, կենդանիները փոխելով իրենց օրվա ռիթմը, անցնում են գիշերային կյանքի, թեև նույն այս կենդանիները այլ վայրերում, որտեղ մարդը նրանց չի անհանգստացնում, ակտիվ են բացառապես ցերեկվա ժամերին: Նկատված է նաև, որ հյուսիսամերիկյան պուման, բերբերյան առյուծը և հնդկական վագրը գերադասում են որսի դուրս գալ գիշերը, որպեսզի խուսափեն իրենց մահացու թշնամուց՝ մարդուց:

Էլ ավելի ուժեղ է արտահայտվում կենդանիների և բույսերի սեզոնային ակտիվության ցիկլը: Գարնանը բնությունը զարթոնք է ապրում: Ձմռան խոր քնից արթնանալով՝ ակտիվ գործունեության են անցնում հազարավոր կենդանիներ, սկսվում է բույսերի աճը, ծլարձակում են սերմերը, մերկ ճյուղերը ծածկվում են փարթամ կանաչով ու բազմերանգ ծաղիկներով: Թռչունները վերադառնում են հեռավոր երկրներից:

Կենդանական և բուսական աշխարհի վրա ազդում է նաև Լուսինը: Շատ ժողովուրդների մոտ հավատալիք կա, որ Լուսինը ազդում է բերքի կամ մարդկանց վարքի վրա: Այսպես օրինակ, լիալուսնի ժամանակ նկատվում է մարդկանց և կոյոտների (ամերիկյան շնագայլեր) էմոցիոնալ վերելք: Լայնորեն հայտնի է մարդկանց լուսնային հիվանդությունը: Լուսնի լույսի ինտենսիվության պարբերական փոփոխությունը ազդում է որոշ կենդանիների բազմացման վրա: Մալազիայի անտառային գիգանտ առնետների երկամսյա հղիության սկիզբը, որպես կանոն, համընկնում է լիալուսնի հետ:

Սակայն Լուսնի ազդեցությունը ամենից առաջ արտահայտվում է մակընթացությամբ, որը կախված է Լուսնի և Արևի ձգողական ուժից: Բացի մակընթացության օրական ռիթմից, նկատվում է նաև ամսական ռիթմ, մաքսիմում, որը տեղի է ունենում յուրաքանչյուր 14 օրը մեկ անգամ, երբ Արևը, Երկիրը և Լուսինը գտնվում են մի ուղիղ գծի վրա և երկնային մարմինները առավելագույն ազդեցություն են գործում օվկիանոսների վրա: Դա, իրոք, իր անմիջական կնիքն է թողնում առափնյա և ծովի մակերեսային ջրերի կենդանական ու բուսական օրգանիզմների վրա:

Այսպես օրինակ, Կալիֆոռնիայի ափերում բնակվող աթերին-գրունիոն կոչվող ձուկը գիշերային ամենամեծ մակընթացության ժամանակ ափ է նետվում: Էգերը պոչը խրելով ավազի մեջ ձկնկիթ են դնում: Այնուհետև արուները բեղմնավորում են դրանց, որից հետո ձկները վերադառնում են ծով: Ամենաբարձր մակընթացության ժամանակ ձվադրելով ափում, ձկները բնազդով զգում են, որ ձկնկիթը կմնա ավազի մեջ, չի տարվի ալիքների կողմից մինչև հաջորդ առավելագույն մակընթացությունը: Այդ ժամանակամիջոցում ձկնիկները անցնում են իրենց զարգացման անհրաժեշտ փուլերը և, երբ սկսվում է մակընթացությունը, լողում են դեպի ծով:

Հյուսիսային Ամերիկայի ատլանտյան ափերում բնակվող ներեիս օղակավոր որդը ամռան ընթացքում ձվադրում է ամսական երկու անգամ՝ լիալուսնի ժամանակ և մեկ շաբաթ հետո՝ Լուսնի վերջին քառորդում: Բերմուդյան կղզիներում հանդիպող օղակավոր մի այլ որդի ձվադրումը կատարվում է ճիշտ լիալուսնից հետո երրորդ օրը, Արեգակի մայրամուտից ուղիղ 54 րոպե հետո:

Բուսաբաններին վաղուց է հետաքրքրում այն հարցը, թե ազդո՞ւմ է արդյոք մագնիսական դաշտը բույսերի վրա: Պարզվում է, որ, այո՛, ազդում է և այն էլ բավականին նկատելի կերպով: Եթե մենք վերցնենք կծոխուրի չոր տերևը և կախելով ուժեղ էլեկտրամագնիսի բևեռների միջև, էլեկտրական հոսանք բաց թողնենք, կնկատենք, թե ինչպես տերևը կտրուկ շարժումով մոտենում է այս կամ այն բևեռին: Պարզվել է, որ այդ հատկությունը առաջին հերթին պայմանավորված է բույսի մեջ պարունակվող ջրի քանակությամբ: Հետագայում պարզվել է, որ մագնիսական դաշտը ազդում է բույսերի աճման և կենսաբանական այլ պրոցեսների վրա: Հաշված է, որ մագնիսական դաշտը զգալիորեն արգելակում է պրոտոպլազմայի շարժումը: Բույսի բջիջը հատկապես զգայուն է մագնիսական դաշտի նկատմամբ կիսվելու և աճման պրոցեսում: Այդ տեսակետից հատկապես զգայուն է երիտասարդ արմատը: Մագնիսական դաշտը ազդեցություն է թողնում նաև բույսի շնչառության վրա: 1960 թ. սովետական գիտնականներ Ա. Վ. Կռիլովը և Գ. Ա. Տարականովան հայտնագործեցին եգիպտացորենի և ցորենի սաղմնարմատիկների խիստ զգայնությունը Երկրի մագնիսական բևեռների նկատմամբ: Նրանք ապացուցեցին, որ եթե սերմի սաղմը ուղղված է դեպի Երկրի հարավային մագնիսական բևեռը, ապա

# ՎԱՍԻԼԻ ՂՈՐՂԱՆՅԱՆԸ ԵՎ ԻՐ ՀԱՎԱՔԱԾՈՒՆ

Անկանավոր երաժշտագետ Վասիլի Ղորղանյանը ծնվել է Թիֆլիսում: Վեց տարեկան՝ դաշնամուր էր նվագում, տասներեք տարեկան հասակում տվեց իր առաջին հրապարակային համերգը: Նա սովորել է Բեռլինում, տիրապետել մի քանի լեզուների: 1901 թվականին նրա ջանքերով ստեղծվել է «Կովկասի տպագրական գործի աշխատողների ընկերությունը»: 1900—1909 թվականներին հրատարակել է «Կավկազսկի վեստնիկ» հանդեսը: Նա հայտնի էր որպես լիրիկական շատ ռոմանսների հեղինակ, որոնցից մեկը՝ «Էլեգիան» մտել էր հռչակավոր երգիչ Ֆյոդոր Շալյապինի երգացանկի մեջ:

Հետագայում Ղորղանյանը մանկավարժական բեղմնավոր աշխատանքի հետ միաժամանակ հրապարակել է ուսումնասիրություններ Բեթհովենի, Վերդիի, Մոցարտի, Շիլլերի, Րաֆֆու, Շիրվանզադեի մասին: Նա անգնահատելի ծառայություններ է մատուցել Կովկասի երաժշտությունը արտասահմանում մասսայականացնելու գործում, դասախոսություններով հանդես է եկել եվրոպական մի շարք քաղաքներում:

Ղորղանյանը նաև նշանավոր կոլեկցիոներ էր: Նրա հավաքածուում կան Գյոթեի, Բեթհովենի, Բալզակի, Պուշկինի ձեռագրերը: Այդ նշանավոր հավաքածուն ներկայումս պահվում է Հայաստանի գրականության և արվեստի թանգարանում: Այն պարունակում է շուրջ երկու հարյուր փաստաթղթեր, այդ թվում՝ Մեծ իշխան Պետրոս Երրորդի, Եկատերինա 2-րդի, Պավել Առաջինի ինքնագրերը, Ալեքսանդր 2-րդի նամակը Նիդեռլանդների թագավորին, Ալեքսանդր I-ի 1815 թ. գրած դիմումը՝ ուղղված ֆրանսիական ժողովրդին, Նիկոլայ Առաջինի ձեռագրերից, հայտնի աշխարհագրագետ և ճանապարհորդ Լինչի նամակներից: Պետրոս Մեծին ուղղված նամակի հեղինակը, ենթադրվում է, որ ֆրանսիացի Լյուդովիկոս 14-րդ թագավորն է:

Ղորղանյանը մեծ հետաքրքրություն է ցուցաբերել հայ անվանի մարդկանց ինքնագրերի նկատմամբ: Պահպանվել են ցարական բանակի հայտնի գեներալ Տեր-Ղուկասովի ինքնագիրը, Եփրեմ Պատրիարքի երկու կոնդակները, Մկրտիչ Խրիմյանի ձեռագիրը, հայոց Լևոն իշխան Լուսինյանի հուշագիրը և այլ բազմազան ու հետաքրքիր նյութեր: Սակայն ամենաուշագրավը թերևս 1814 թվակիր նամակն է: Նամակում կարդում ենք. «Քանի որ դաշնակից տերությունները հայտարարել են, որ կայսրն է Եվրոպայում խաղաղության հաստատման միակ արգելքը, ապա կայսրը, իր երդմանը հավատարիմ, հայտարարում է, որ իր և իր զավակների անունից հրաժարվում է Ֆրանսիայի և Իտալիայի թագերից և չկա այնպիսի զոհաբերություն (նույնիսկ կյանքը), որ ինքը պատրաստ չլինի տալու հանուն Ֆրանսիայի շահերի»:

Այս նամակը գրել է Ֆրանսիայի միապետը՝ Նապոլեոն Բոնապարտը, Ֆոնտենբլոյում: Քիչ խունացած, բայց լավ պահպանված այս ձեռագիրը հետաքրքիր պատմություն ունի: Ռուսաստանի Նիկոլայ Առաջին թագավորի անձնական արխիվից այն անցել է նրա գեներալ-համհարզ Աստաֆևին, գեներալի մահից հետո ձեռագիրը անցել է նրա որդուն, գլխավոր շտաբի գեներալ Աստաֆևին, ապա վերջինիս սնանկացած ազնվական որդուն, որը Թիֆլիսում վաճառել է ձեռագիրը Ղորղանյանին: Ղորղանյանի հավաքածուում Նապոլեոնի ձեռագրին կցված են դրա իսկությունը հաստատող մի շարք հետաքրքիր փաստաթղթեր՝ գերմաներեն, անգլերեն, ֆրանսերեն և ռուսերեն լրագրերից կտրված պատառիկներ, որոնք ժամանակին նշել են Ղորղանյանի ձեռք բերած փաստաթղթի կարևորությունը:

Աշխարհում ոչ մի կոլեկցիոներ երազել անգամ չի կարող մի այնպիսի անձնական հավաքածուի մասին, որն այսօր պահվում է Հայաստանի գրականության և արվեստի՛ թանգարանում:

*Վ. ՍԱՆԹՐՅԱՆ*

---

*այն ավելի արագ է ծլում: Նման ծիլի արմատային սիստեմը ավելի ինտենսիվ է զարգանում, քան այն սերմինը, որի սաղմը ուղղված է եղել դեպի հյուսիս: Ավելին, կանադացի գիտնականները ապացուցել են, որ «Մարկով» սորտի ցորենի ծիլերը իրենց արմատային սիստեմը հողում տեղաբաշխում են հյուսիս-հարավ ուղղությամբ: Այլ հեղինակների տվյալներով, շաքարի ճակնդեղի սերմնաբույսի արմատները դասավորվում են արևելք-արևմուտք ուղղությամբ: Դա ցույց է տալիս, որ տարբեր բույսեր տարբեր վերաբերմունք են ցուցաբերում դեպի մագնիսական դաշտը: Այդ երևույթը գիտնականները անվանել են մագնիտոտրոպիզմ: Ապացուցված է, որ բույսերի աճի ու զարգացման վրա նման ազդեցություն են գործում նաև տարբեր ինտենսիվության ռադիոճառագայթները:*

*Ահա այսպես երկնային լուսատուները ազդում են երկրագնդի օրգանական աշխարհի վրա: Գիտությունը դեռևս առաջին քայլերն է անում այդ ազդեցությունը մանրամասն ուսումնասիրելու ուղղությամբ: Հավանաբար շուտով կպարզվի, թե ինչպիսի կապ գոյություն ունի երկնային այլ լուսատուների և երկրային կենդանի օրգանիզմների միջև: Իզուր չէ, որ անգլիացի բնագետ Ֆրենսիս Թոմպսոնը գրում է. «... հըպվելով ծաղկին, դու դրանով անհանգստացնում ես աստղերին»:*



# ՎԼԱԴԻՄԻՐ ԴԱԼ

(Մահվան 100-ամյակի առթիվ)

Նավատորմում մի քանի տարի ծառայելուց հետո, երիտասարդ սպա Վլադիմիր Դալը պաշտոնաթող եղավ։ «Ես հիմնավոր կրթության կարիք ունեմ՝ աշխարհում օգտակար մարդ դառնալու համար»,— ասաց նա։ Հրամանատարությունը ուրախությամբ բավարարեց նրա խնդրանքը։ Դալը հայտնի էր իր ըմբոստությամբ. նա համարձակվել էր նույնիսկ երգիծական բանաստեղծություն գրել փոխ-ծովակալի դեմ, որի համար էլ դատվել էր։ Այդպիսի սպայից ինչքան շուտ ազատվեին, այնքան լավ։

Դալը ընդունվեց Դորպատի համալսարանի բժշկական ֆակուլտետը, հաջողությամբ ավարտեց ու ստացավ դոկտորի կոչում։ Այնուհետև աշխատեց Պետերբուրգում, Օրենբուրգում, մասնակցեց ռուս-թուրքական պատերազմին և Խիվինյան արշավանքին, ամենուր օգտագործելով իր գիտելիքներն ու հմտությունը։ Նա դարձավ Ռուսաստանի նշանավոր բժիշկներից մեկը և մեծ հեղինակություն էր վայելում գիտական շրջանում՝ բազմաթիվ լուրջ հոդվածների ու աշխատությունների շնորհիվ։ Դանտեսի հետ մենամարտից հետո, երբ Պուշկինը մահացու վիրավորվել էր, վերջին գիշերը Դալը անցկացրեց նրա հետ։ Նրանք հին ընկերներ էին, և Դալը ամեն ինչ արեց Պուշկինին փրկելու համար։ Բանաստեղծի մահը ծանր հարված էր նրա համար։

Բժշկությունից բացի, Դալը հրապուրվել է բնական գիտություններով։ Կազմել է «Բուսաբանություն» և «Կենդանաբանություն» դասագրքերը, մասնակցել Ռուսաստանի Աշխարհագրական ընկերության հիմնադրմանը։ Նրա նախագծերով կամուրջներ են կառուցվել մի շարք վայրերում։ Դալը հռչակված էր նաև որպես գրող ու ազգագրագետ։ Գրել է վիպակներ ու կատակերգություններ, հրատարակել է ռուսական ժողովրդական առածների և հեքիաթների ժողովածուներ։

Սակայն նրա թողած ամենամեծ ժառանգությունը Ռուսերենի քառահատոր բացատրական բառարանն է։ Սովորելիս ու աշխատելիս, երկրում շրջագայելու ընթացքում, մոտիկից շփվելով ժողովրդի հետ, նա հավաքում էր բառեր, բացատրում ու դասակարգում։ Երկարատև այդ աշխատանքի արդյունքը եղավ վիթխարի բառարանը, որը պարունակում է մոտ 200 հազար բառ։ Տպագրության օրից մինչև այժմ Դալի Ռուսերենի բացատրական բառարանը իբրև այդպիսին մնում է անփոխարինելի, դուրս չի գալիս շրջանառությունից, ծառայում է սերնդից-սերունդ, ուրիշների հեղինակությամբ հրապարակ իջած այլ նույնատիպ բառարանների կողքին։

ԳՐԻԳՈՐ ՄԱԿՈՒՆՑ


Լույս է տեսնում 1923 թվականից։



ՊԻՈՆԵՐ

№ 10 հոկտեմբեր 1972 թ.

ՀԼԿԵՄ ԿԵՆՏԿՈՄԻ ԵՎ Վ. Ի. ԼԵՆԻՆԻ ԱՆՎԱՆ ՊԻՈՆԵՐԱԿԱՆ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅԱՆ ՀԱՆՐԱՊԵՏԱԿԱՆ ԽՈՐՀՐԴԻ [illegible] ԱՄՍԱԳԻՐ


## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



*Շապիկի առաջին էջը՝ նկ. ՀԱԿՈԲ ՀԱԿՈԲՅԱՆԻ*


Գլխավոր խմբագիր՝ ԱՆԱՀԻՏ ՍԱՀԻՆՅԱՆ

**Խմբագրական կոլեգիա՝**
ԱՆԱՆՅԱՆ Վ., ԲԱԲԱԽԱՆՅԱՆ Վ., ԳՐԻԳՈՐՅԱՆ Վ. (պատասխանատու քարտուղար), ԽՍԱՅԱՆ Վ., ԹԱԴԵՎՈՍՅԱՆ Թ., ԽԱՆՋՅԱՆ ԳՐ., ԿԱՊՈՒՏԻԿՅԱՆ Ս., ՀԱԿՈԲՅԱՆ Հ., ՀՈՎՍԵՓՅԱՆ Ռ., ՀՐԱՉՅԱՆ Խ., ԹՈՐՈՍՅԱՆ Ժ., ՍՄԲԱՏՅԱՆ Կ. (գեղ. խմբագիր), ՍՏԵՓԱՆՅԱՆ Ս.

**«Пионер»** на армянском языке. Адрес редакции: 375200 Ереван-15, ул. Кармир банаки, № 15.

*Հասցեն՝ 375200, Երևան—15, Կարմիր բանակի փողոց, № 15։*

*Հեռախոսներ՝ 56—32—72, 58—08—33, 56—14—96։*

ՎՖ 08801։ Պատվեր՝ 1491։ Տպաքանակ՝ 73500։ Տպագրական 3 մամուլ։ Ստորագրված է տպագրության 4/X 1972 թ.։

ՀՍՍՀ Մինիստրների սովետի մամուլի պետական կոմիտեի պոլիգրաֆարդյունաբերության վարչության Հ. Մեղապարտի անվան պոլիգրաֆկոմբինատ։ Երևան, Տերյան փ. № 91։

